Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք


Հ Կ (Բ) Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ


# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 8 (110)


«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ԵՐԵՎԱՆ—1941

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

Հ Կ (Բ) Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 8 (110)



«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ԵՐԵՎԱՆ—1941

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

23-42

# ՄԱՅԻՍԻ ՄԵԿԸ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՊՐՈԼԵՏԱՐԻԱՏԻ ՈՒԺԵՐԻ ՄԱՐՏԱԿԱՆ ՋՈՐԱՏԵՍԻ ՕՐՆ Է

*Այս տարի միջազգային պրոլետարիատը Մայիսի մեկը դիմավորում է երկրորդ իմպերիալիստական պատերազմի պայմաններում, որն արդեն վեր է ածվել ժողովրդների համաշխարհային սպանդանոցի։*

*Երկրագնդի մեկ և կես միլիարդ ազգաբնակչությունը արդեն ներգրավված է պատերազմի մեջ։ Այդ պատերազմի վերջը դեռ չի երևում, ընդհակառակը, պատերազմը շարունակում է ծավալվել, ընդգրկելով իր մեջ նորանոր երկրներ։*

*Պատերազմի բոցերում պետություններ են խորտակվում, սահմաններ փոխվում, երկրի երեսից անհայտանում են քաղաքներ։ Պատերազմի դեռ սկզբում կործանվեց ամբող-*

ջությամբ նեխված լեհական պետությունը։ Նորվեգիան, Դանիան, Բելգիան, Հոլանդիան գրավված են, Ֆրանսիան ջարդված է և նրա տերիտորիայի 2/3-րդը նույնպես գրավված է։ Հունաստանից և Ալբանիայից հետո պատերազմն սպառնում է ընդգրկել ողջ Բալկանյան թերակղզին։ Պատերազմի մրրիկը մոլեգնում է ողջ Եվրոպայում, Ասիայում, Աֆրիկայում, ցամաքներում, ծովերում, օվկիանոսներում։

Հանուն աշխարհի նոր վերաբաժանման, հանուն հումքի նոր աղբյուրների և սպառման նոր շուկաների, հանուն գերշահույթների մղվող իմպերիալիստների այս նոր պատերազմն անսովոր ուժով մերկացրեց իմպերիալիզմի ողջ համաշխարհային սիստեմի նեխվածությունն ու կրիզիսը։

Պատերազմն առաջացնում է չտեսնված մասշտաբներով նյութական կորուստներ, մասսաների աղքատացում. նա արագացնում է ոչ միայն պատերազմող երկրների տնտեսության քայքայումը և կազմալուծումը, այլև ողջ կապիտալիստական աշխարհինը միասին վերցրած։

Պատերազմն իր ողջ ծանրությամբ ընկնում է աշխատավոր մասսաների ուսերին։ Աշխատավորները մեռնում են ոչ միայն



ռումբերից և ականներից, այլև սովից ու հիվանդություններից, նրանք տանջվում են գործազրկությունից, ուժեղացող շահագործումից, հարկերից, մթերքների պակասությունից, թանկությունից և սպեկուլյացիայից։

Անգլիայի ձեռնարկությունների բանվորները հիմա արդեն աշխատում են օրական 10—14 ժամ։ Չնայած նրան, որ բանակ են կանչված միլիոնավոր մարդիկ, այնուամենայնիվ, Անգլիայում հիմա հաշվվում է մոտ մեկ միլիոն գործազուրկ։ Գերմանիայում օրենքը թույլատրում է բանվորական օրվա տևողությունը հասցնել մինչև 16 ժամի։ Միլիոնավոր բանվորների բանակ կանչված լինելու հետևանքով, Գերմանիայի կապիտալիստները լայնորեն կիրառում են կանանց և երեխաների աշխատանքը, որոնց աշխատավարձն զգալիորեն ցածր է տղամարդկանց աշխատավարձից։ Շատ կապիտալիստական երկրներում կիրառվում է ձրի հարկադիր աշխատանք։

Իտալիայի աշխատավորների դրության մասին կարելի է դատել մոտերս իտալական մի ժուռնալի օրինակ բերած գյուղացիների պատասխաններով։ Այն հարցին, թե ինչպե՞ս են նրանք ապրում՝ մի

գյուղացի պատասխանել է. «Մենք դադարել ենք հաց ուտելուց և ուտում ենք միայն պոլենտա (խիստ եփած եգիպտացորենի ալյուր — ԽՄԲ.) և սալաթ, մենք դադարել ենք միս ուտել և գինի խմել, մենք այլևս չենք ծխում, իսկ զվարճալիքների մասին խոսք էլ արդեն չի կարող լինել. տեսնենք կհաջողվի՞ արդյոք մեզ, գոնե այդպիսով կենդանի մնալ»:

Պատերազմը Ֆրանսիային անսահման տանջանքներ և դժբախտություններ բերեց: Ապաստարանից, գույքից, ընտանիքից և մերձավորներից զրկված միլիոնավոր փախստականներ այժմ լրացնում են գործազուրկների և աղքատների շարքերը: ԱՄՆ-ի ֆրանսիական հյուպատոս Հանրի Էյը պաշտոնապես հայտարարեց, որ Ֆրանսիայում նկատվում են քաղցից մահանալու բազմաթիվ դեպքեր:

Չնայած արդյունաբերության ռազմական տենդին, որը կապիտալիստներին վիթխարի շահեր է բերում, ԱՄՆ-ում հաշվվում է 10 միլիոնից ավելի գործազուրկ:

Ժողովրդի քաղցը և տանջանքները կապիտալիստներն օգտագործում են իրենց հարստացման համար, զբաղվելով սպեկուլյացիայով և բոլոր ապրանքների գների բարձ-



րացումով: Եթե պատերազմն աշխատավորներին բերում է ավելի ու ավելի ծանր զրկանքներ, աղքատություն, սով և մահ, ապա բուրժուազիայի համար պատերազմը «սարսափելի շահավետ բան է» (Լենին): «Նյու-Յորք Թայմզ» թերթի հաղորդագրությամբ ԱՄՆ-ի առևտրի մինիստր Ջոնսը հայտարարել է, որ վերջին տարվա ընթացքում ռազմական արդյունաբերության եկամուտներն աճել են ավելի, քան 25 տոկոսով, իսկ 1941 թիվը խոստանում է բերել եկամուտների էլ ավելի մեծ աճ:

«Բրիտիշ Սելանիզ» անգլիական կամպանիայի (միավորում է արհեստական մետաքս արտադրող ֆերմաները) 1940 թվի զուտ եկամուտը հավասար է եղել 320,913 ֆունտ ստերլինգի, 1939 թվի 94,302 ֆունտ ստերլինգի դիմաց: «Ֆելկիշեր-Բեոբախտեր» թերթի հոկտեմբերի 4-ի համարի տվյալներով, գերմանական ակցիոներական ընկերությունների ակցիաների արժեքը 1940 թվի սեպտեմբերի 3-ին, այսինքն՝ պատերազմն սկսելուց մեկ տարի հետո, աճել է համարյա 132 տոկոսով:

Ամերիկյան Ջոնս Լոֆլինի պողպատի տրեստի շահույթները մեկ տարում հասել են մինչև 2000 տոկոսի: Այս տվյալները պեր-

ճախոս կերպով ցույց են տալիս, թե ո՞ւմն է ներկա պատերազմն օգտակար և ո՞վ է նրա միջոցով հարստանում։



Ժամանակակից իմպերիալիստական պատերազմը, ինչպես և նախորդը, կապիտալիստները նախապատրաստել էին ժողովրդից խորապես գաղտնի, երկու տասնյակ տարիների ընթացքում։ Այդ արյունահեղ սպանդանոցը նախապատրաստելու գործում բուրժուազիային օգնում էին սոցիալ-դեմոկրատիայի ռեակցիոն առաջնորդները, որոնք սիստեմատիկաբար վիժեցնում էին ռևոլյուցիոն բանվորների բոլոր փորձերը՝ ստեղծելու բանվորական միասնական ճակատ։ Նրանք կասեցնում էին ժողովրդական լայն մասսաների մոբիլիզացիան՝ ընդդեմ պատերազմի, նրանք անամոթաբար զրպարտում էին Սովետական Միությանը և ժողովուրդների միջև խաղաղության հաստատելու ու սոցիալիզմի երկրի անվտանգության ապահովման համար նրա վարած քաղաքականությունը։ Իսկ երբ պատերազմն սկսվեց, իմպերիալիզմի սոցիալ-դեմոկրատական ծառաներն առաջիններն էին, որ պայքար սկը-



սեցին բանվոր դասակարգի կազմակերպությունների դեմ։

Իմպերիալիստները, որպեսզի իրենց ռազմական ծրագրի իրագործման ճանապարհից հեռացնեն բոլոր արգելքները, ուժեղացրին հարձակումը բանվոր դասակարգի դեմոկրատական իրավունքների և նրա բոլոր նվաճումների վրա։ Կապիտալի և ռեակցիայի այս հարձակման դեմ աշխատավորների լայն զանգվածները՝ կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, երկրորդ իմպերիալիստական պատերազմի հենց առաջին իսկ օրերից վճռական պայքար ծավալեցին։

1940 թ. հունիսին Անգլիայում կայացավ ձեռնարկությունների և պրոֆմիությունների բազմաթիվ խորհուրդների, ինչպես և բանվորական շարժման բոլոր խմբավորումների ներկայացուցիչների կոնֆերանս։ Կոնֆերանսը պահանջեց, որպեսզի ստեղծվի գործարանների, պրոֆմիությունների և բանվորական զանազան կազմակերպությունների մասսայական շարժման վրա հենվող ժողովրդական կառավարություն։ Հուլիսին Լոնդոնում կայացավ մեկ ուրիշ կոնֆերանս, որը հրավիրվել էր «Քաղաքացիական ազատությունների պաշտպանման ազգային կոմիտեի» կողմից, որի կազմում մտնում էին լեյբո-

ըիստական պարտիայի գործիչները, լիբերալ պարտիայի դեպուտատները, անդամները, գրականության և արվեստի ներկայացուցիչները։ Կոնֆերանսում ընդունված բանաձևերում առաջ էին քաշված մամուլի, ժողովի և խոսքի ազատության, պրոֆմիութենական իրավունքների պահպանման պահանջները։

1941 թ. հունվարի 12-ին Լոնդոնում կայացավ Ժողովրդական Կոնգրեսը։ Այդ Կոնգրեսը վերածվեց անգլիական աշխատավորների մի հզոր ցույցի՝ ընդդեմ իմպերիալիստական բուրժուազիայի ինչպես իր երկրի, նույնպես և կապիտալիստական աշխարհի։ Ժողովրդական Կոնգրեսի աշխատանքներում մասնակցեցին 2234 դելեգատ, որոնք ընտրված էին 1.200 հազար աշխատավորների կողմից։ Կոնգրեսի ընդունած քաղաքական պլատֆորմայում ասված է. «Հավաքվելով Ժողովրդական Կոնգրեսի առաջին նիստին, Լոնդոնում, 1941 թ. հունվարի 12-ին, մենք արտահայտում ենք մեր այն համոզմունքը, որ ներկա կառավարությունը ներկայացնում է հարուստների շահերը, որ միայն բանվոր դասակարգի միասնական և ակտիվ պայքարը՝ հանուն իր սեփական շահերի և իրապես բանվոր դասակարգը ներկայացնող ժողո-



վրդական կառավարության ստեղծման, կարող է նրան փրկել այն դժբախտություններից և տանջանքներից, որ բերում է պատերազմը»։

Վերջին ժամանակներս ողջ Անգլիայով մեկ ծավալվել է մի հզոր կամպանիա հօգուտ կոմունիստական «Դեյլի Ուորկըր» թերթի պաշտպանության, որ փակել են անգլիական իշխանությունները։ Հազարավոր բանվորներ, պրոֆմիության անդամներ, մտավոր աշխատանքի, գիտության, արվեստի, գրականության գործիչներ, ակտիվորեն բողոքում են անգլիական բուրժուազիայի ռեակցիոն քաղաքականության դեմ։

Ամերիկյան բանվորները նույնպես կոմպարտիայի ղեկավարությամբ շարունակում են հերոսական պայքար մղել կապիտալի և ռեակցիայի հաստատման դեմ։ Նրանք պայքարում են ընդդեմ ռազմական օրենքների, ընդդեմ ԱՄՆ-ը պատերազմի մեջ ներգրավելու ղեկավարող դասակարգերի վարած քաղաքականության։ Նրանք բողոքում են ընդդեմ ամերիկյան կապիտալիստների հսկայական ռազմական շահույթների։ Ամերիկայի ձեռնարկություններում աճում է աշխատանքային կոնֆլիկտների և գործադուլների ալիքը։

Բանվոր դասակարգի և աշխատավորների պայքարը կապիտալի հարձակման դեմ ծավալվում է նաև մյուս կապիտալիստական երկրներում։ Աշխատավորներն ամենուրեք ավելի ու ավելի են համախմբվում կոմունիստական պարտիաների շուրջը, Կոմունիստական Ինտերնացիոնալի դրոշի ներքո։

Չինական մեծ, հերոսական ժողովուրդը, ճապոնական իմպերիալիստների դեմ մղած իր պայքարի տարիներին փառապանծ էջեր է գրել՝ գաղութային և կիսագաղութային ժողովուրդների համուռն ազատության մղած պայքարի պատմության մեջ։ Չնայած, որ ճապոնացիք պատերազմի ընթացքում գրավել են Չինաստանից 900 նահանգ, այնուամենայնիվ, ընդամենը միայն 100 նահանգն է գտնվում նրանց ձեռքում։ Ճապոնիան Չինաստանի դեմ մղած պատերազմում կորցրել է արդեն 1,5 միլիոն սպանված և վիրավոր, սակայն հաղթանակը դեռ ձեռք չի բերված։ Ճապոնական պաշտոնական վիճակագրությունը հարկադրված է հաղորդել Ճապոնիայի ձեռնարկություններում տեղի ունեցող բազմաթիվ գործադուլների և կոնֆլիկտների մասին։ Անգամ այդ բացարձակորեն նվազեցրած տվյալներով ձեռնարկություններում



1939 թ. 10 ամսվա ընթացքում արձանագրված է 1009 կոնֆլիկտ, 83 հազար մասնակիցներով, մեկ տարվա ընթացքում գործադուլավորների և գործադուլների քանակն աճել է ավելի քան 45 տոկոսով։ 1940 թ. բանվորների՝ ձեռնարկատերերին և վոյենշչինային ցույց տված դիմադրությունը խոշոր չափեր է ընդունել։

Բանվոր դասակարգի և աշխատավորների համար՝ ընդդեմ շահագործողների նրանց մղած պայքարում արիության և էներգիայի անսպառ աղբյուր հանդիսանում է այն բանի գիտակցումը, որ «աշխարհի երեսին կա Մոսկվա», կա մի երկիր, որտեղ հաղթանակել է սոցիալիզմը, կա Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների մեծ, հզոր Միությունը— ողջ աշխարհի աշխատավորության հույսն ու հենարանը։

***

Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության ազդեցությունը և դերը միջազգային արենայում, վերջին տարիների ընթացքում, հսկայական չափով աճել է։ Այժմ արդեն և ոչ մի միջազգային քաղաքականության քիչ թե շատ նշանակալից

հարց չի լուծվում, առանց հաշվի առնելու Սովետական Միության միջազգային նշանակությունը։

ՍՍՌՄ-ի միջազգային նշանակության աճը վառ կերպով ապացուցվում է լենինյան-ստալինյան իմաստուն արտաքին քաղաքականության այն մեծագույն հաղթանակներով, որոնք ձեռք են բերվել ընկեր Ստալինի ղեկավարությամբ։

Վերջին ժամանակներս կապիտալիստական աշխարհը — անկումի, պատերազմի և քայքայման աշխարհը — ստիպված եղավ նեղվել, իսկ սոցիալիզմի աշխարհը, երջանիկ հույսի, ողջ մարդկության երջանկության և ուրախության աշխարհը՝ ընդարձակեց իր սահմանները։

1940 թ. մայիսմեկյան տոնը Սովետական Միության աշխատավորների հետ միևնույն շարքերում առաջին անգամ ազատորեն տոնեցին Արևմտյան Ուկրաինայի, Արևմտյան Բելոռուսիայի և Կարելո-Ֆիննական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի շատ քաղաքների և ռայոնների ազատագրված ժողովուրդները։

1941 թ. մայիսմեկյան տոնը Սովետական Միության բազմամիլիոն մասսաների հետ մեկտեղ առաջին անգամ ազատորեն կտոնեն Լիտվական ՍՍՌ-ի, Լատվիական ՍՍՌ-ի,



Էստոնական ՍՍՌ-ի, Բեսարաբիայի և Հյուսիսային Բուկովինայի ազատագրված ժողովուրդները։

ՍՍՌՄ աշխատավորները 1941 թ. մայիսի մեկը դիմավորում են սոցիալիստական շինարարության նոր հաղթանակներով։

ՍՍՌՄ աշխատավորներն իրագործելով Համամիութենական Կոմունիստական (բոլշևիկների) պարտիայի 18-րդ համագումարի պատմական որոշումները, բոլշևիկների պարտիայի և Լենինի գործի մեծ շարունակող ընկեր Ստալինի ղեկավարությամբ, կոմունիզմի շինարարության նոր նվաճումներ են ձեռք բերել։ Հաջող կերպով իրագործվում է երրորդ ստալինյան հնգամյակը՝ մեր հայրենիքի տնտեսական և պաշտպանական հզորության հետագա ամրապնդման հնգամյակը։

Սովետական Միության սոցիալիստական ժողովրդական տնտեսությունը զարգանում է պլանայնորեն, ընդլայնված վերարտադրության օրենքների համաձայն։ Դա ապահովում է ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի արտադրության անշեղ աճը։ Մեր սոցիալիստական արդյունաբերությունը, գյուղատնտեսությունը ենթակա չեն այն տենդայնության ազդեցությանը, որ կրում է

ամեն անգամ կապիտալիստական տնտեսությունը հատկապես կրիզիսների ու պատերազմների ժամանակ։

Այն ժամանակ, երբ Անգլիայում արդյունաբերության արտադրանքի 1940 թվի մակարդակը 1929 թ. համեմատությամբ բարձրացել է ընդամենը միայն 11 տոկոսով, ՍՍՌՄ-ի սոցիալիստական արդյունաբերության 1940 թ. ողջ արտադրանքը 1929 թվի համեմատությամբ աճել է 5,3 անգամ։

Երրորդ ստալինյան հնգամյակի միայն 3 տարիների ընթացքում ՍՍՌՄ-ում սոցիալիստական արդյունաբերության արտադրանքն աճել է 44 տոկոսով։ Նույն տարիների ընթացքում մեքենաշինության և մետաղամշակման արտադրանքն է՛լ ավելի շատ է աճել— 76 տոկոսով։ 1937 թ. վերջին չուգունի միջին օրական ձուլումը կազմում է 40 հազար տոնն, իսկ 1940 թ. վերջին— 46—47 հազար տոնն։ Նույն ժամանակամիջոցում պողպատի օրական ձուլումն աճել է 50—51 հազար տոննից մինչև 58—59 հազար տոնն, քարածխի օրական հանույթը— 370 հազ. տոննից մինչև 467 հազար տոնն, նավթինը և գազինը՝ 84—86 հազար տոննից մինչև 97—98 հազար տոնն։

Սակայն մետալուրգիայի, վառելանյութի



և արդյունաբերության այլ ճյուղերի այս վերելքը մեզ համար բավարար չէ։ Մենք պետք է է՛լ ավելի արագորեն գնանք ՍՍՌՄ-ի հիմնական տնտեսական խնդիրը լուծելու ուղիով— անցնել գլխավոր կապիտալիստական երկրներից և՛ տնտեսապես, այսինքն՝ ազգաբնակչության մեկ հոգուն ընկնող արդյունաբերական արտադրանքի չափի տեսակետից։ Երրորդ հնգամյակի պլանի առաջադրանքները, անշուշտ, կարող են ոչ միայն կատարվել, այլև գերակատարվել։

Երրորդ հնգամյակի երեք տարիների ընթացքում ՍՍՌՄ-ի ժող. տնտեսության մեջ կատարված կապիտալ ներդրումները (նոր կառուցումներ և ձեռնարկությունների վերակահավորում) կազմել է 108 միլիարդ ռուբլի, այսինքն՝ 2 և ավելի անգամ շատ, քան ողջ առաջին հնգամյակում և մի փոքր քիչ, քան ողջ երկրորդ հնգամյակում։

Առաջին հնգամյակի ընթացքում գործի են գցվել մոտ 1500 նոր ձեռնարկություններ։ Իսկ երրորդ հնգամյակի միայն 3 տարիների ընթացքում պետական արդյունաբերության մեջ (չհաշված տեղական նշանակություն ունեցող ռայոնական արդյունաբերությունը), գործի է գցվել մոտ 2900 գործարան, ֆաբրիկա, հանք, էլեկտրոկայան և այլն։ Սակայն

կապիտալ շինարարության ասպարեզում ձեռք բերած հաջողությունները նույնպես կարող էին է՛լ ավելի շատ լինել։ Կապիտալ աշխատանքների և նոր հզորությունների գործի գցման նախատեսված պլանն այնուամենայնիվ թերակատարված է։

Էլեկտրիֆիկացիայի լենինյան պլանը հիանալիորեն իրագործվում է ՍՍՌՄ-ում։ 1913 թ. ցարական Ռուսաստանի բոլոր էլեկտրոկայանների հզորությունը հավասար էր ընդամենը 1,1 միլիոն կիլովատի, իսկ երրորդ հնգամյակի միայն երեք տարիների ընթացքում Սովետական Միության էլեկտրոկայանների հզորությունն աճել է 2.400 հազար կիլովատով։

1940 թ. երկաթուղային փոխադրումները 1939 թ. համեմատությամբ, աճել են 17 միլիարդ տոնն-կիլոմետրով և հասել են 409 միլիարդ տոնն-կիլոմետրի։

Ռազմական գործողությունների ժամանակ, որ ստիպված եղավ Կարմիր Բանակը մղել 1939 թվի վերջերին և 1940 թվի սկզբներին, մեր երկաթուղային տրանսպորտը, չնայած մի քանի թերությունների, կարողացավ իր առջև դրված առաջադրանքները կատարել և ապացուցեց, որ նա կարող է Կարմիր Բանակի մոբիլիզացիոն պահանջ-



ները կատարել։ Սակայն երկաթուղային տրանսպորտի հաջողությունները կարող էին է՛լ ավելի մեծ լինել, եթե նրա աշխատանքին չխանգարեին բազմաթիվ թերություններ, որոնց դեմ տրանսպորտում մինչև հիմա էլ անհրաժեշտ պայքար չի տարվում։ Մինչև հիմա էլ շարունակվում են ոչ ռացիոնալ փոխադրումները, լիկվիդացիայի չեն ենթարկված մի շարք հանգույցների և ուղղությունների բաց թողման ընդունակության նեղ տեղերը։

Ստալինյան երրորդ հնգամյակի անցած 3 տարիների ընթացքում բոլշևիկյան պարտիայի անդուլ հոգատարության շնորհիվ ջրային տրանսպորտն զգալի չափով մեծացրել է իր փոխադրումների ծավալը։ Իրագործվում է պլանով նախատեսված ջրային տրանսպորտի սոցիալիստական ռեկոնստրուկցիայի վիթխարի ծրագիրը։ Սակայն չնայած Լենինի-Ստալինի պարտիայի ամենօրյա հսկայական օգնությանը, գետային և ծովային տրանսպորտն անբավարար է աշխատում։ Չեն կատարվում փոխադրումների պլանները, հատկապես այնպիսի կարևոր նյութերի, ինչպիսիք են անտառանյութը, նավթը, քարածուխը, շինանյութերը։ Պարտիայի և կառավարության կողմից

ստեղծված են բոլոր պայմանները, որպեսզի երկաթուղային և ջրային տրանսպորտը գնան դեպի վեր, և ո՛չ միայն կատարեն, այլև գերակատարեն իրենց պլանները։ Ընթացիկ տարում պարտիան, կառավարությունը տըվին հիմնարկությունների և ձեռնարկությունների ղեկավարներին աշխատանքի արտադրողականության աճի, աշխատանքային կարգապահության ամրապնդման, արտադրանքի բաց թողնման մեծացման և նրա որակի բարձրացման այնպիսի մի հզոր լծակ, ինչպիսիք հանդիսանում են ՍՍՌՄ Գերագույն Սովետի 1940 թ. հունիսի 26-ի և հուլիսի 10-ի Հրամանագրերը։ Սակայն, դեռ ոչ բոլոր ղեկավարներն են կիրառել արտադրության աճի, աշխատանքի որակի բարձրացման այդ հսկայական հնարավորությունները։ Դրա հետևանքով արդյունաբերության մի շարք ճյուղեր և ձեռնարկություններ 1940 թ. պլաններն զգալիորեն թերակատարեցին։

Խնդիրը կայանում է նրանում, որպեսզի սոցիալիստական կարգերի հսկայական ռեզերվները լիովին օգտագործվեն ողջ ժողովրդական տնտեսության վերելքի համար, որպեսզի ողջ սովետական ժողովուրդը մոբիլիզացիայի ենթարկվի 18-րդ պարտ. կոնֆերանսի որոշումներն իրագործելու հա-



մար— հանուն արտադրական գրաֆիկի, խստագույն խնայողության, կահավորման, նյութերի, հումքի խստագույն հաշվառման և ճիշտ օգտագործման, հանուն արտադրության մեջ կարգ ու մաքրություն ստեղծելու, հանուն տեխնոլոգիական և աշխատանքային կարգապահության, միանձնյա ղեկավարության ամրապնդման, ստախանովյան շարժման զարգացման, հանուն 7,9 միլիարդ փութ հացահատիկի, սոցիալիստական հողագործության և անասնապահության հետագա վերելքի։

Այդ խնդիրների հաջող լուծումը կապահովի մեր երկրի տնտեսական և պաշտպանական հզորության հետագա աճը և ամրապնդումը, մեր երկրի հաղթական առաջխաղացումը դեպի կոմունիզմ։

***

Երրորդ ստալինյան հնգամյակի տարիների ընթացքում զգալիորեն աճել է մեր սոցիալիստական գյուղատնտեսության արտադրանքը։ Գյուղատնտեսության արտադրական ուժերի հզոր աճը հնարավոր դարձավ շնորհիվ կոլխոզային կարգերի հաղթանակի և սովետական կառավարության ձեռնար-

կումների — գյուղատնտեսական աշխատանքի մեքենայացման, ագրոտեխնիկայի զարգացման և այլնի ուղղությամբ։

1940 թվին ՍՍՌՄ-ում աշխատում էր մոտ 7000 մեքենա-տրակտորային կայան, տրակտորային պարկերի թիվը 1938 թվի համեմատությամբ՝ 483 հազարից 1940 թվին հասավ մինչև 523 հազարի։ Կոմբայնների պարկերի թիվը նույն ժամանակվա ընթացքում՝ 153 հազարից հասավ մինչև 182 հազարի։ Մեր երկրի դաշտերում աշխատում են հարյուր հազարավոր ավտոմեքենաներ և բարդ գյուղատնտեսական այլ մեքենաներ ու գործիքներ։

Սոցիալիստական գյուղատնտեսության վերելքը դարձել է հաստատուն։ Տարեց-տարի աճում է բոլոր կուլտուրաների համախառն արտադրանքը։ 1910—1914 թ. 5 տարիների ընթացքում ցարական Ռուսաստանի հացահատիկի միջին տարեկան բերքը 4 միլիարդ փթից քիչ ավելի է կազմել։ 1940 թ. սոցիալիստական գյուղատնտեսության հացահատիկային կուլտուրաների համախառն արտադրանքը, չնայած կլիմայական անբարեհաջող պայմաններին (բացառիկ ուժեղ ցրտեր, գարնան ուշացում, չորային եղանակներ արևելքում) կազմել է մոտ



7,3 միլիարդ փութ։ 1940 թ. ոչ միայն առանձին ռայոններ, այլև ամբողջ մարզեր հասել են հարյուրփութային բերքի։

1940 թվին Ստալինյան ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեն և ՍՍՌՄ Ժողկոմսովետն ընդունեցին մի շարք կարևոր որոշումներ, կոլխոզային կարգերի հետագա ամրապնդման և սոցիալիստական գյուղատնտեսության վերելքի—կոլխոզների հասարակական հողերը հափշտակումներից պաշտպանելու միջոցառումների մասին, գյուղատնտեսական մթերքների գնումների և մթերման քաղաքականության փոփոխումների մասին, կոլխոզնիկներին գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և անասնապահության ապրանքայնության բարձրացման համար լրացուցիչ վարձատրություն տալու մասին և այլն։

Պարտիայի և կառավարության այս բոլոր որոշումների բարեխիղճ և ազնիվ կատարումը կարող է ապահովել սոցիալիզմի է՛լ ավելի վիթխարի հաղթանակները գյուղում։

Այս ձեռնարկումները հանգեցրին անասունների գլխաքանակի աճին և անասնապահության ապրանքայնության բարձրաց-

մանը։ Միայն 1940 թ. անասունների գլխաքանակը կոլխոզներում աճել է — խոշոր եղջերավոր անասուններինը՝ 12 տոկոսով, խոզերինը՝ 12 տոկոսով, ոչխարներինը՝ 25 տոկոսով և այծերինը՝ 34 տոկոսով։ Խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը 1940 թ. վերջին միայն կոլխոզային ֆերմաներում հասավ այն մակարդակին, ինչպիսին ուներ ողջ Գերմանիան 1938 թվին։ Իսկ Գերմանիան իրավամբ համարվում է զարգացած անասնապահության երկիր։

Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսը ցուցադրեց ողջ աշխարհին սոցիալիստական գյուղատնտեսության հրաշալի հաջողությունները, որը «ոչ միայն հաղթանակների հանրագումարն է տալիս, այլև գյուղատնտեսության հետագա վերելքի, սոցիալիզմի փառավոր հաղթանակների հզոր կոչն է հանդիսանում» (Մոլոտով)։

***

Տարեց-տարի աճում է ՍՍՌՄ ժողովրդական եկամուտը։ Այդ աճը հանդիսանում է սովետական ժողովրդի նյութական և կուլտուրական մակարդակի, նրա սպառունակության աճի վառ ցուցանիշը։ Երրորդ ստալինյան հնգամյակի միայն վերջին երեք տարիների ընթացքում ժողովրդական եկամուտը մեր երկրում 96 միլիարդից հասել է



125,5 միլիարդի։ 1913 թվի ցարական Ռուսաստանի ժողովրդական եկամուտը հավասար էր 21 միլիարդ ռուբլու։ Այսպիսով, 1940 թ. ՍՍՌՄ ժողովրդական եկամուտը 6 անգամ գերազանցում է նախառևոլյուցիոն Ռուսաստանի ժողովրդական եկամուտին։ Ընդամին անհրաժեշտ է նկատի ունենալ, որ ՍՍՌՄ ժողովրդական եկամուտն իրապես ժողովրդական եկամուտ է հանդիսանում։ Այն ստեղծվում է սոցիալիստական սիստեմի տնտեսության մեջ և բաշխվում է ելնելով միայն ժողովրդի շահերից։ Իսկ ցարական Ռուսաստանում, ինչպես առհասարակ կապիտալիստական երկրներում, ժողովրդական եկամուտն ստեղծում են աշխատավորները՝ ենթարկվելով ամենադաժան շահագործման, սակայն այդ եկամուտի առյուծի բաժինը յուրացվում է մի բուռն կապիտալիստների և կալվածատերերի կողմից։

Տարեց-տարի աճում է սպառման միջոցների արտադրությունը, ավելանալով 1940 թվին 7 տոկոսով՝ 1939 թվի համեմատությամբ և 33 տոկոսով՝ 1937 թ. համեմատությամբ։

Բանվորների և ծառայողների թիվը ժողովրդական տնտեսության մեջ 1937 թ. 27 միլիոն մարդուց 1940 թ. հասավ 34 միլիոնի։

1937 թվից մինչև 1940 թ. մեր երկրի բանվորների և ծառայողների աշխատավարձի ֆոնդը 82,2 միլիարդ ռուբլուց աճեց մինչև 123,7 միլիարդ ռուբլու, այսինքն՝ 1,5 անգամ։

Երրորդ ստալինյան հնգամյակի տարիների ընթացքում շարունակ բարելավվել է աշխատավոր գյուղացիության նյութական և կենցաղային դրությունը։ Կոլխոզների դրամական միջոցները 1937 թվի 14,2 միլիարդ ռուբլուց՝ 1939 թվին աճեցին մինչև 18,3 միլիարդ ռուբլու. 1940 թիվը կոլխոզների և կոլխոզնիկների, ինչպես դրամական, նույնպես և նատուրալ եկամուտների հետագա զգալի աճի տարի հանդիսացավ։

Սոցիալիստական շինարարության տարիների ընթացքում մեր երկրում իսկական կուլտուրական ռևոլյուցիա է կատարվել։ Սովետական ժողովրդի կուլտուրական և տեխնիկական մակարդակն անճանաչելիորեն աճել է։

Միայն 1926—1939 թ. թ. ընթացքում, որակյալ բանվորների քանակն աճել է— փականագործներինը՝ 3,7 անգամ, խառատներինը՝ 6,8, ֆրեզերովշչիկներինը՝ 13, մեքենավարներինը՝ 4,4, ծեփագործներինը՝ 7 և տրակտորիստներինը՝ 215 անգամ։ Նույն ժա-



մանակամիջոցում ինժեներների քանակն աճել է 7,7 անգամ, ագրոնոմներինը՝ 5, գիտական աշխատողներինը՝ 7,1, ուսուցիչներինը՝ 3,5 և բժիշկներինը՝ 2,3։

1941 թ. սովետական ԲՈՒՀ-երը և ԲՏՈՒՀ-ները բաց են թողնելու մոտ 120 հազար մասնագետներ։

Այն ժամանակ, երբ կապիտալիստական երկրներում պատերազմի հետևանքով խորտակվում են համաշխարհային կուլտուրայի հազարավոր հուշարձաններ, փակվում են դպրոցների և համալսարանների դռները և մտավոր աշխատանքի հազարավոր աշխատավորներ մեռնում են սովից և գործազրկությունից, մեր երկրում ծաղկում են գիտությունն ու արվեստը։

Բացի Ուկրաինական, Բելոռուսական գիտությունների ակադեմիաներից, ընթացիկ տարում ստեղծվեցին գիտության ակադեմիաներ Վրացական և Լիտվական միութենական ռեսպուբլիկաներում։ Մեր երկրում հազարավոր գիտնականներ, արտիստներ, գրողներ պարգևատրված են բարձրագույն պարգևներով— ՍՍՌՄ շքանշաններով։

ՍՍՌ Միության Ժողովրդական Կոմիսարների Սովետն ի հավերժացումն ընկեր Ստալինի 60-ամյակի, արվեստի և գիտու-

թյան գործիչների նշանավոր աշխատությունների, լավագույն գյուտերի, ռազմական գիտությունների ասպարեզում ձեռք բերած նշանավոր նվաճումների համար սահմանեց ստալինյան մրցանակներ։ Արվեստի, գրականության, գիտության շատ նշանավոր գործիչներ արդեն ստացել են ստալինյան մրցանակները։

***

Մեր ողջ երկրում մեկ ծավալվել է երրորդ ստալինյան հնգամյակի անվան հզոր սոցիալիստական մրցակցությունը, որն ընդգրկել է միլիոնավոր աշխատավորների։ Մրցակցության առաջավորները ստեղծագործական նախաձեռնության նոր, հիանալի ձևեր են առաջ քաշել՝ աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրրական առաջադրանքների կատարման և գերակատարման համար։

Մրցակցությունը սոցիալիստական աշխատանքի այնպիսի նոր հերոսներ է ծնել, ինչպիսիք են՝ Կռիվոյ Ռոգի հորատող Ալեքսեյ Սեմիվոլոսը— հանքանյութի բազմահանքախորշային և արագացրած հանույթի նոր մեթոդի նախաձեռնողը, «Կրասնո-Ուրալ մեդռուդա» տրեստի Կրասնոգվարդեյսկի շախտի հորատող Իլարիոն Յանկինան, որը սեմիվոլոսյան մեթոդը փոխադրեց Ուրալի



պղնձահանքային ձեռնարկությունները։

1940 թ. սկսած և այժմ էլ շարունակվող՝ սև և գունավոր մետալուրգիայի, քարածխային և նավթային արդյունաբերության աշխատողների մրցակցությունը, ինչպես նաև ողջ երկրում մեկ ծավալված տարբեր ճյուղերի և ձեռնարկությունների հանուն առաջնության մղած պայքարը— բացել է արտադրանքի բացթողնման աճի, նրա որակի բարձրացման, աշխատանքի արտադրողականության աճի հսկայական չօգտագործված ռեզերվներ։

Երրորդ հնգամյա պլանի անվան սոցմրցությունը ծավալվում է ոչ միայն արդյունաբերության, այլև գյուղատնտեսության մեջ։

Ստեղծագործական վերելքը, որն ընդգրկել է կոլտնտեսական լայն մասսաներին, իր արտահայտությունը գտավ կոլտնտեսական ջրամբարների շինարարության համար ծավալվող շարժման մեջ։ Վորոնեժի մարզի Տալովսկ ռայոնի «Երկաթուղային» արտելի կոլտնտեսականների նախաձեռնությամբ, 1940 թ. Սովետական Միությունում կոլխոզները կառուցեցին համարյա 16.000 նոր ջրամբարներ, վերանորոգեցին ավելի քան 20.000 հին ջրամբար։

ՀամԿ(բ)Պ 18-րդ կոնֆերանսի նախապատրաստման օրերին սոցիալիստական մրցման նոր ալիք բարձրացավ, որն ավելի ու ավելի ծավալվում է պայքար հանուն կոնֆերանսի պատմական որոշումների կատարման նշանաբանի տակ։

Սովետական մարդիկ սոցիալիստական հայրենիքի բոցավառ հայրենասերներ են։ Սովետական մարդկանց հերոսության ցայտուն վկայությունն է հանդիսանում հրամանատարների, քաղաշխատողների, կարմիր բանակայինների, արդյունաբերության և գյուղատնտեսության ստախանովականների, գիտության և արվեստի մարդկանց մասսայական պարգևատրումը Սովետական Միության շքանշաններով և մեդալներով։ Միայն 1940 թ. ավելի քան 50.000 կարմիր բանակայիններ, հրամանատարներ, քաղաշխատողներ, պարգևատրված են ՍՍՌՄ շքանշաններով և մեդալներով։ Ավելի քան 400 մարդ արժանացել է ռազմական բարձրագույն պարգևին՝ Սովետական Միության Հերոսի կոչմանը։

Երրորդ ստալինյան հնգամյակի անցած երեք տարիները համոզիչ կերպով ցույց տվին, թե ինչպիսի անսպառ հնարավորություններ կան սովետական սոցիալիստական



կարգերում, մեր երկրում կոմունիզմի հաղթանակի նոր, ավելի նշանակալից նվաճումներ ձեռք բերելու համար։

Սովետական ժողովուրդն իրավունք ունի հպարտանալու իր հաջողություններով։ Բայց մենք չէինք լինի բոլշևիկներ, արժանի ապրելու և պայքարելու Մարքսի, Էնգելսի, Լենինի, Ստալինի մեծ դրոշի տակ, եթե ձեռք բերելով այդ նվաճումները, հանգստանայինք դափնիների վրա։ Բոլշևիկներին յուրահատուկ է պարտիայի հանձնարարած գործի համար ներքին անհանգստությունը, այդ է միշտ սովորեցրել սովետական մարդկանց Լենինը, այդ է անընդհատ մեզ սովորեցնում ընկեր Ստալինը։ «Ես կարծում եմ, ընկերներ,— ասել է ընկեր Ստալինը Մոսկվայի կազմակերպության ակտիվի ժողովում,— ԿԿ-ի և ԿՎՀ-ի 1928 թվի ապրիլի 13-ի միացյալ պլենումի աշխատանքների մասին տված իր զեկուցման մեջ,— որ ինքնաքննադատությունը մեզ անհրաժեշտ է ինչպես օդը, ինչպես ջուրը։ Ես կարծում եմ, որ առանց ինքնաքննադատության, մեր պարտիան չէր կարող առաջ ընթանալ, նա չէր կարող բանալ մեր վերքերը և չէր կարող վերջ տալ մեր թերություններին»։

Պարտիան իր ողջ աշխատանքներում ղե-

կավարվում է ընկեր Ստալինի այս ցուցմունքներով։ Այդ ցուցմունքների համաձայն, բոլշևիկների պարտիայի 18-րդ Համամիութենական կոնֆերանսը վճռականաբար երևան հանեց պարտիական, սովետական, տնտեսական և պրոֆմիութենական կազմակերպությունների, արդյունաբերության, տրանսպորտի, գյուղատնտեսության ղեկավարման աշխատանքների թերությունները։ Ընկեր Մալենկովը ՀամԿ(բ)Պ 18-րդ կոնֆերանսում տված «Արդյունաբերության և տրանսպորտի բնագավառում պարտիական կազմակերպությունների խնդիրների մասին» զեկուցման մեջ ասաց.

«Իսկ որո՞նք են, ընկերնե՛ր, արդյունաբերության և տրանսպորտի մի շարք ճյուղերի անբավարար աշխատանքի պատճառները։

Մենք պարտավոր ենք այդ պատճառները երևան բերել բոլշևիկյան ամենայն ուղղամտությամբ։ Որքան ավելի անկեղծորեն մենք բացահայտենք մեր թերությունները, այնքան ավելի շուտ մենք կազատվենք դրանցից։ Այդ է մեզ ամեն օր սովորեցնում ընկեր Ստալինը։ Թերությունները սքողող մարդիկ, վատ ծառայություն են մատուցում պարտիային»։

Համամիութենական պարտիական կոնֆե-



րանսը ոչ միայն երևան հանեց այդ թերությունները, այլև ցույց տվեց նրանց վերացման ուղիները։

Մեր պարտիայի 18-րդ Համամիութենական կոնֆերանսը ելնելով հսկայական ռեզերվների առկայությունից և սոցիալիստական հայրենիքի տնտեսական ու պաշտպանական հզորության հետագա ամրապնդման խնդիրներից, ընդգծեց ՍՍՌՄ-ի ժողովրդական տնտեսության զարգացման 1941 թվի պլանը։

Միայն մեկ տարվա ընթացքում ՍՍՌՄ արդյունաբերության համախառն արտադրանքի աճը պետք է կազմի 17—18 տոկոս։ Արտադրության միջոցների արտադրությունը պետք է աճի 23,5 տոկոսով, իսկ սպառման միջոցների արտադրությունը՝ 9 տոկոսով։ Չուգունի արտադրանքը պետք է հասցվի 18 միլիոն տոննի, պողպատինը՝ 22,4 միլիոն տոննի, պրոկատինը՝ 15,8 միլիոն տոննի։ Քարածխի հանույթը պետք է հասնի մինչև 191 միլիոն տոննի, գազով նավթինը մինչև 38 միլիոն տոննի։ Գյուղատնտեսության ասպարեզում անհրաժեշտ է հացահատիկային կուլտուրաների համախառն արտադրանքը հասցնել մինչև 7.900 միլիոն փթի։ Պետական պլանով

մեկ տարվա ընթացքում պետք է գործի գցվեն լիակատար կամ մասնակի հզորությամբ 1576 արդյունաբերական ձեռնարկություն, այդ թվում՝ 1151 նոր և 425 վերակառուցված ձեռնարկություն։

Մեծ են 1941 թ. պլանի առաջադրանքները նաև սովետական ժողովրդի նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացման ասպարեզում։ Բանվորների և ծառայողների քանակը ժողովրդական տնտեսության մեջ կհասնի 31,6 միլիոն մարդու։ Աշխատավարձի ֆոնդը կաճի 14 միլիարդ ռուբլով և կկազմի ողջ ժողովրդական տնտեսության մեջ 175 միլիարդ ռուբլուց ավելի։ Սոցիալ-կուլտուրական ձեռնարկումների համար նախատեսված է ծախսել 47,8 միլիարդ ռուբլի, այսինքն՝ 14,6 տոկոսով ավելի, քան անցյալ տարի։ Տարեց-տարի աճում է նոր երկիր — կոմունիզմի երկիր կառուցող սովետական ժողովրդի բարեկեցությունը և կուլտուրան։

Սովետական ժողովուրդը, ինչպես մեկ մարդ, համախմբվելով բոլշևիկների պարտիայի, սիրելի և իմաստուն առաջնորդ ընկեր Ստալինի շուրջը, հաղթահարելով իր ճանապարհին ամեն տեսակ դժվարություններ, կկատարի երրորդ ստալինյան հնգամ-



յակի չորրորդ տարվա ժողովրդատնտեսական պլանը։

Մայիսի մեկի օրը սովետական ժողովուրդը ցույց կտա իր անսասան սերն ու նվիրվածությունը Լենինի-Ստալինի պարտիային, իր սոցիալիստական հայրենիքի տնտեսական և պաշտպանական հզորությունն էլ ավելի բարձրացնելու ջերմ ցանկությունը, ՍՍՌՄ բանվոր դասակարգի և կապիտալիստական երկրների բանվոր դասակարգի միջև եղած ինտերնացիոնալ կապերը հետագայում է՛լ ավելի ուժեղացնելու պատրաստակամությունը, կոմունիզմի նոր բարձունքներին հասնելու ուղիով համառորեն առաջ գնալու պատրաստակամությունը։

---

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՑՈՒՑԱԿ
## ՄԱՅԻՍԻ ՄԵԿԻ ԱՌԹԻՎ


Կ. ՄԱՐՔՍ ԵՎ Ֆ. ԷՆԳԵԼՍ.— Կոմունիստական պարտիայի մանիֆեստը. Պետհրատ, 1938 թ. Երևան։

Կ. ՄԱՐՔՍ ԵՎ Ֆ. ԷՆԳԵԼՍ.— Երկեր, հատոր 26, մաս 2, էջ 53, 54—60, 361—362, 363—404 (ռուսերեն)։

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Մայիսի մեկը. Ժողովածու, Պետքաղհրատ 1941 թ. (ռուսերեն)։

Վ. Ի. ԼԵՆԻՆ.— Համուռն սոցիալիստական հայրենիքի պաշտպանության. Պետքաղհրատ 1939 թ. (ռուսերեն)։

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— 1912 թվի մայիսմեկյան թռուցիկը։ Վ. Ի. Լենին և Ի. Վ. Ստալին.— «Լենայի դեպքերի մասին» ժողովածույում։ Պետքաղհրատ, 1941 թ. (ռուսերեն)։

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Հոկտեմբերյան ռևոլյուցիայի միջազգային բնույթը։ Հոկտեմբերի 10-րդ տարեդարձի առթիվ, «Լենինիզմի հարցեր» էջ 220—228. Պետհրատ, 1940 թ. Երևան։





Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— ՀամԿ(բ)Պ Կենտկոմի աշխատանքների մասին տված հաշվետու զեկուցումը պարտիայի 18-րդ համագումարում։ Պետհրատ, 1939 թ. Երևան։

Ընկ. Իվանովի նամակը և ընկ. Ստալինի պատասխանը։ Պետհրատ, 1938 թ. Երևան։

Վ. ՄՈԼՈՏՈՎ.— ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման երրորդ հնգամյա պլանը։ Զեկուցումը և եզրափակման խոսքը ՀամԿ(բ)Պ 18-րդ համագումարում։ Պետհրատ, 1939 թ. Երևան։

Լենինի պատգամներով.— Ընկ. Ա. Ս. Շչերբակովի զեկուցումը նվիրված Վ. Ի. Լենինի մահվան 18-րդ տարեդարձին, 1941 թ. հունվարի 21-ին Մեծ Թատրոնում կայացած հանդիսավոր սգո նիստին։ «Սովետական Հայաստան» № 19 (6128) հունվարի 24, 1941 թ.։

Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ.— Արդյունաբերության և տրանսպորտի բնագավառում պարտիական կազմակերպությունների խնդիրների մասին. զեկուցում ՀամԿ(բ)Պ 18-րդ կոնֆերանսում։ ՀամԿ(բ)Պ համամիութենական 18-րդ կոնֆերանսի նյութեր.

Քաղաքական գրականության պետական հրատարակչություն, Երևան 1941 թ.։

Ն. Ա. ՎՈԶՆԵՍԵՆՍԿԻ.— 1940 թվի տնտեսական արդյունքները և ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1941 թվականի պլանը։ ՀամԿ(բ)Պ համամիութենական 18-րդ կոնֆերանսի նյութեր. Քաղաքական գրականության պետական հրատարակչություն։ Երևան 1941 թ.։

Գ. ԴԻՄԻՏՐՈՎ.— Ստալինը և միջազգային պրոլետարիատը. «Բոլշևիկ» ժուռնալ. № 2, 1940 թ. (ռուսերեն)։

ԵՄ. ՅԱՐՈՍԼԱՎՍԿԻ.— Լենինը և Ստալինը սոցիալիստական հայրենիքի պաշտպանության մասին։ 1941 թվի հունվարի 21-ի «Պրավդայի» համարը։

ԵՄ. ՅԱՐՈՍԼԱՎՍԿԻ.— Ռևոլյուցիոն մայովկաների 50-ամյակը Ռուսաստանում։ 1940 թ. մայիսի մեկի «Պրավդա»-ի համարը։

ՅԱ. ՅՈՖՖԵ.— ՍՍՌՄ տնտեսական հիմնական խնդրի մասին։ Պետքաղհրատ. 1941 թ. Երևան։

Ի. ՎԱՐՅԱՇ.— Աշխատանքային օրենքները կապիտալիստական երկրներում երկրորդ իմպերիալիստական պատերազմի ժամանակաշրջանում։ «В помощь марксистско-ленинскому образованию» ժուռնալ, № 14, 1940 г.

Ժողովրդական կոմիսարների խորհրդի և համամիութենական կոմկուսի կենտրոնական կոմիտեի ... ժողովրդական կոմիտեի նամագումարը.— 1941 թ. հունվարի 17-ի (№ 14) «Սովետական Հայաստանի» համարը։

Մ. ԿԱՄՄԱՐԻ.— Պրոլետարական ինտերնացիոնալիզմի և սովետական հայրենասիրության մասին։ «Բոլշևիկ» ժուռնալ, № 15—16, 1940 թ. (ռուսերեն)։

Ա. ԼԵԳՐԱՆ.— Բանվոր դասակարգի դրությունը և պայքարը երկրորդ իմպերիալիստական պատերազմի պայմաններում «Կոմունիստիչեսկի Ինտերնացիոնալ» ժուռնալ, № 1,1941 թ. (ռուսերեն)։

Ֆ. ԼԵՈՊՈԼԴ.— Ո՞վ է վճարում պատերազմի համար և ո՞վ է հարստանում նրա միջոցով։ «Կոմունիստիչեսկի Ինտերնացիոնալ» ժուռնալ, № 10—11, 1940 թ. (ռուսերեն)։

## ԳԵՂԱՐՎԵՍՏԱԿԱՆ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Մ. ԳՈՐԿԻ.— «Մայրը». Երկերի ժողովածու, մաս 1-ին. Պետհրատ, Երևան, 1938 թ.։

Վ. ՄԱՅԱԿՈՎՍԿԻ.— «Մայիս». Երկեր, հատոր 8 (ռուսերեն)։
Վ. ՄԱՅԱԿՈՎՍԿԻ.— «Արևային դրոշը», Երկեր. հատոր 9 (ռուսերեն)։
Վ. ԿԱՏԱՅԵՎ.— «Սպիտակին է տալիս առագաստը մենավոր» Гослитиздат 1937 թ. (ռուսերեն)։

---



## ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ-ՈՒՄ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՆԵՐԻ ԲԵՐՔԱՏՎՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԱՆԱՍՆԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ ՄԹԵՐԱՏՎՈՒԹՅՈՒՆԸ ԲԱՐՁՐԱՑՆԵԼՈՒ ՀԱՄԱՐ ԿՈԼԽՈԶՆԻԿՆԵՐԻ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԼՐԱՑՈՒՑԻՉ ՎԱՐՁԱՏՐՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

### ՍՍՌՄ ԺՈՂԿՈՄՍՈՎԵՏԻ ԵՎ ՀԱՄԿ(Բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ 1941 ԹՎԱԿԱՆԻ ՄԱՐՏԻ 13-Ի ՈՐՈՇՈՒՄԸ

*Հաշվի առնելով գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը և անասնաբուծության մթերատվությունը բարձրացնելու համար կոլխոզնիկների աշխատանքի լրացուցիչ վարձատրություն մտցնելու մասին Հայկական ՍՍՌ կոլխոզնիկների խնդրանքները և սովետական ու պարտիական կազ-*

մակերպությունների միջնորդությունները, ՍՍՌ Միության Ժողովրդական Կոմիսարների Սովետը և ՀամԿ(բ)Պ Կենտկոմը որոշում են.

1. Հանձնարարել կոլխոզներին՝ սկսած 1941 թվականից աշխօրերի սահմանված վարձատրությունից դուրս, բրիգադաների ու օղակների կոլխոզնիկներին լրացուցիչ կերպով տալ նատուրայով կամ վարձատրել փողով արտադրանքի այն մասը, որը ստացել է բրիգադան, օղակը հացահատիկային, տեխնիկական, բանջարեղենի, կերի կուլտուրաների, պտղատու պարտեզների ու խաղողի այգիների բերքատվության պլանից ավելի, ինչպես նաև կաթնատվության, անասունների աճեցման, գիրացման և անասնաբուծության մթերատվության այլ ցուցանիշների պլանային առաջադրանքներից ավելի։

2. Հաշվի առնելով ծխախոտի, բամբակի, շաքարի ճակնդեղի և այլ տեխնիկական կուլտուրաների ասպարիզում օղակների կատարած աշխատանքի դրական փորձը, հանձնարարել կոլխոզներին՝ արտադրական բրիգադաներում կազմակերպել օղակներ և նրանց ամրացնել տեխնիկական, բանջարեղենի, կարտոֆելի և այլ կուլտուրաների ցանքային որոշակի տարածություններ, որոնք պահանջում են նրանց աճեցման հա-



մար ձեռքի աշխատանքի զգալի գործադրում, ինչպես նաև ամրացնել բազմամյա տունկեր։

3. Բերքատվության պլանի գերակատարման համար սահմանել կոլխոզնիկների աշխատանքի լրացուցիչ վարձատրման հետևյալ չափերը.

## ՀԱՑԱՀԱՏԻԿԱՅԻՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՆԵՐԻ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

Դաշտավարական բրիգադայի այն կոլխոզնիկները, որոնք գերակատարել են բերքատվության պլանը բրիգադային ամրացված հացահատիկային կուլտուրաների ամբողջ տարածության վրա, ստանում են մեկ երրորդ մասն այն հացահատիկից, որը հավաքել է բրիգադան նրա համար սահմանված պլանային բերքից ավելի։

Բրիգադայի այն կոլխոզնիկները, որոնք գերակատարել են բերքատվության պլանը հացահատիկային մեկ կամ մի քանի կուլտուրաների ասպարիզում, լրացուցիչ վարձատրություն են ստանում, եթե բերքատվության պլանը միջին հաշվով կատարել են բրիգադային ամրացված հացահատիկային կուլտուրաների ցանքի ամբողջ տարածության վրա։

մակերպությունների միջնորդությունները, ՍՍՌ Միության Ժողովրդական Կոմիսարների Սովետը և ՀամԿ(բ)Պ Կենտկոմը որոշում են.

1. Հանձնարարել կոլխոզներին՝ սկսած 1941 թվականից աշխօրերի սահմանված վարձատրությունից դուրս, բրիգադաների ու օղակների կոլխոզնիկներին լրացուցիչ կերպով տալ նատուրայով կամ վարձատրել փողով արտադրանքի այն մասը, որը ստացել է բրիգադան, օղակը հացահատիկային, տեխնիկական, բանջարեղենի, կերի կուլտուրաների, պտղատու պարտեզների ու խաղողի այգիների բերքատվության պլանից ավելի, ինչպես նաև կաթնատվության, անասունների աճեցման, գիրացման և անասնաբուծության մթերատվության այլ ցուցանիշների պլանային առաջադրանքներից ավելի։

2. Հաշվի առնելով ծխախոտի, բամբակի, շաքարի ճակնդեղի և այլ տեխնիկական կուլտուրաների ասպարեզում օղակների կատարած աշխատանքի դրական փորձը, հանձնարարել կոլխոզներին՝ արտադրական բրիգադաներում կազմակերպել օղակներ և նրանց ամրացնել տեխնիկական, բանջարեղենի, կարտոֆելի և այլ կուլտուրաների ցանքային որոշակի տարածություններ, որոնք պահանջում են նրանց աճեցման հա-



մար ձեռքի աշխատանքի զգալի գործադրում, ինչպես նաև ամրացնել բազմամյա տունկեր։

3. Բերքատվության պլանի գերակատարման համար սահմանել կոլխոզնիկների աշխատանքի լրացուցիչ վարձատրման հետևյալ չափերը.

## ՀԱՑԱՀԱՏԻԿԱՅԻՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՆԵՐԻ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

Դաշտավարական բրիգադայի այն կոլխոզնիկները, որոնք գերակատարել են բերքատվության պլանը բրիգադային ամրացված հացահատիկային կուլտուրաների ամբողջ տարածության վրա, ստանում են մեկ երրորդ մասն այն հացահատիկից, որը հավաքել է բրիգադան նրա համար սահմանված պլանային բերքից ավելի։

Բրիգադայի այն կոլխոզնիկները, որոնք գերակատարել են բերքատվության պլանը հացահատիկային մեկ կամ մի քանի կուլտուրաների ասպարեզում, լրացուցիչ վարձատրություն են ստանում, եթե բերքատվության պլանը միջին հաշվով կատարել են բրիգադային ամրացված հացահատիկային կուլտուրաների ցանքի ամբողջ տարածության վրա։

Այն օղակի կոլխոզնիկները, որոնք գերակատարել են կորեկի, բրնձի, եգիպտացորենի և հատիկա-լոբազգիների բերքատվության պլանը օղակին ամրացված ցանքի տարածության վրա, ըստ յուրաքանչյուր առանձին կուլտուրայի ստանում են մեկ երրորդ մասն այդ կուլտուրաների հատիկի, որ հավաքվել է օղակի համար սահմանված բերքատվությունից ավելի։

## ԱՐԵՎԱԾԱՂԿԻ ԵՎ ԳԱՆԳՐԱՎՈՒՇԻ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

Օղակի այն կոլխոզնիկները, որոնք գերակատարել են արևածաղկի բերքատվության պլանը օղակին ամրացված ցանքի տարածության վրա և դաշտավարական բրիգադայի այն կոլխոզնիկները, որոնք գերակատարել են գանգրավուշի բերքատվության պլանը բրիգադային ամրացված ցանքի տարածության վրա, ստանում են մեկ երրորդ մասն այն սերմերի, որոնք հավաքվել են օղակի և բրիգադայի համար այդ կուլտուրաների բերքի սահմանված պլանից ավելի։

## ԿԱՐՏՈՖԵԼԻ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

Օղակի այն կոլխոզնիկները, որոնք գերակատարել են կարտոֆելի բերքատվության



պլանը օղակին ամրացված ցանքի ամբողջ տարածության վրա, ստանում են չորրորդ մասը կարտոֆելի այն բերքի, որը հավաքվել է օղակի համար սահմանված պլանից դուրս։

## ԲԱՆՋԱՐԱՆՈՑԱՅԻՆ ԵՎ ԲՈՍՏԱՆԱՅԻՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՆԵՐԻ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

Օղակի այն կոլխոզնիկները, որոնք գերակատարել են բանջարանոցային ու բոստանային կուլտուրաների բերքատվության պլանը օղակին ամրացված ցանքի ամբողջ տարածության վրա, ստանում են մեկ հինգերորդ մասն այդ կուլտուրաների բերքի, որը հավաքվել է օղակի համար սահմանված պլանից ավելի։

Օղակի այն կոլխոզնիկները, որոնք գերակատարել են բանջարանոցային, բոստանային կուլտուրաների և կերի արմատապտուղների սերմի բերքատվության պլանը, ստանում են լրացուցիչ վարձատրություն փողով՝ բերքատվության պլանից ավելի ստացված սերմի յուրաքանչյուր ցենտների համար, հաշված կոլխոզում մեկ ցենտներ սերմի միջին արժեքի 50 տոկոսը, ներառյալ հիմնական վարձատրությունը և պարգև-հավելումները սերմի համար։

## ԿԵՐԻ ԿՈՒԼՏՈՒՐԱՆԵՐԻ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

Բրիգադայի այն կոլխոզնիկները, որոնք գերակատարել են բազմամյա և միամյա խոտերի, բնական խոտհարքների բերքատվության պլանը բրիգադային ամրացված տարածության վրա, ստանում են երրորդ մասն այդ կուլտուրաների բերքի, որը հավաքվել է բրիգադայի համար սահմանված պլանից ավելի։

Առվույտի, երեքնուկի, կորնգանի և վիկի սերմերի յուրաքանչյուր ցենտների համար, որ հանձնվել է պետությանը՝ բրիգադային կամ օղակին ամրացված ամբողջ տարածության վրա ստացված բերքատվության պլանից ավելի, տալ կոլխոզնիկներին կոլխոզում մեկ ցենտներ սերմի միջին արժեքի երրորդ մասը, ներառյալ հիմնական վարձատրությունը և պարգև-հավելումները, ինչպես նաև այն հացահատիկի երրորդ մասը, որն ստացել է կոլխոզը մթերող կազմակերպություններից այդ սերմերի համար։

## ԿԵՐԻ ԱՐՄԱՏԱՊՏՈՒՂՆԵՐԻ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

Օղակի այն կոլխոզնիկները, որոնք գերակատարել են կերի արմատապտուղների բերքատվության պլանը օղակին ամրացված



տարածության վրա, ստանում են երրորդ մասն այն բերքի, որը հավաքվել է օղակի համար սահմանված պլանից դուրս։

## ՇԱՔԱՐԻ ՃԱԿՆԴԵՂԻ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

Օղակի այն կոլխոզնիկներին, որոնք կոնտրակտացիայով մի հեկտարից ճակնդեղ են հանձնել ոչ պակաս այն քանակից, որը հանձնելիս կոլխոզը պարգև-հավելումներ է ստանում, տալ պարգև-հավելումների գումարի 50 տոկոսը, որն ստացել է կոլխոզը ճակնդեղի համար։

Բացի դրանից, բերքատվության պլանից ավելի օղակի ստացած շաքարի ճակնդեղի յուրաքանչյուր ցենտների համար, օղակի կոլխոզնիկներից յուրաքանչյուրին գրանցել լրացուցիչ կերպով 0,5 աշխօր։

Այն դեպքում, երբ ամբողջ կոլխոզը իր հանձնած ճակնդեղի համար պարգև-հավելում չի ստացել, իսկ առանձին օղակներ կատարել են նրանց համար սահմանված բերքատվության առաջադրանքները, այդ օղակները կոլխոզից ստանում են լրացուցիչ վարձատրություն փողով՝ բերքատվության պլանից դուրս օղակի հանձնած ճակնդեղի հիմնական արժեքի 50 տոկոսի չափով, ինչպես նաև 0,5 աշխօր՝ պլանից ա-

վելի ստացված ճակընդեղի յուրաքանչյուր ցենտների համար։

## ԱՐԱԽԻՍԻ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

*Օղակին ամրացված ցանքի տարածության վրա բերքատվության պլանից ավելի օղակի ստացած արախիսի յուրաքանչյուր ցենտների համար կոլխոզնիկները լրացուցիչ վարձատրություն են ստանում փողով՝ կոլխոզում արախիսի մեկ ցենտների միջին արժեքի (մթերակայանի վճարը) 50 տոկոսի չափով, ներառյալ հիմնական վարձատրությունը և կոլխոզի ստացած պարգև-հավելումները։*

## ԲԱՄԲԱԿԻ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

*Օղակին ամրացված ցանքի տարածության վրա բերքատվության պլանից ավելի ստացված բամբակի յուրաքանչյուր ցենտների համար այդ օղակի կոլխոզնիկները ստանում են փողով լրացուցիչ վարձատրություն՝ կոլխոզում բամբակի մեկ ցենտներ հումքի միջին արժեքի (մթերակայանի վճարը) 50 տոկոսի չափով, ներառյալ հիմնական վարձատրությունը և կոլխոզի ստացած պարգև-հավելումները։*



## ԾԽԱԽՈՏԻ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

*Օղակին ամրացված տարածության վրա բերքատվության պլանից ավելի ստացված ծխախոտի յուրաքանչյուր ցենտների համար այդ օղակի կոլխոզնիկները ստանում են փողով լրացուցիչ վարձատրություն, հաշվի առնելով, հանձնված արտադրանքի որակը՝ մեկ ցենտներ ծխախոտի համար՝ մթերակայանի վճարած միջին գումարի 50 տոկոսի չափով, ներառյալ հիմնական վարձատրությունը և կոլխոզի ստացած պարգև-հավելումները։*

## ՊՏՂԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ ԵՎ ԽԱՂՈՂԱԳՈՐԾՈՒԹՅԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

*Օղակի այն կոլխոզնիկները, որոնք գերակատարել են պտղատու պարտեզների և հատապտուղների բերքատվության պլանը օղակին ամրացված ամբողջ տարածության վրա, ստանում են նատուրայով 25 տոկոսն այն բերքի, որը հավաքվել է օղակի համար սահմանված պլանից ավելի։*

*Օղակի այն կոլխոզնիկները, որոնք գերակատարել են բերքատվության պլանը օղակին ամրացված պտղաբեր խաղողի այգիների ամբողջ տարածության վրա, ստանում*

են խաղողով կամ գինիով հինգերորդ մասն այն բերքի, որը հավաքվել է օղակի համար սահմանված պլանից ավելի։

Օղակի այն կոլխոզնիկները, որոնք աշխատում են ջերմոցներում խաղողի միաչքանի տնկանյութ աճեցնելու ապարիզում և օգտակար տարածության յուրաքանչյուր մետրից տվել են միջին հաշվով 150 տնկիից ավելի, տալ 30-ական ռուբլի լրացուցիչ վարձատրություն վերոհիշյալ նորմայից ավելի յուրաքանչյուր հազար տնկիի համար։

Օղակի այն կոլխոզնիկները, որոնք սպասարկում են պտղատու ծառերի ու խաղողի տնկարանները և կարողացել են ավելացնել տնկարանին ամրացված տարածությունից ստացվող տնկիների քանակը, պլանից ավելի աճեցված տնկիների յուրաքանչյուր հազարի համար ստանում են լրացուցիչ վարձատրություն փողով՝ կոլխոզի վաճառած յուրաքանչյուր հազար տնկիի միջին արժեքի մեկ երրորդ մասի չափով։

## ԵԹԵՐԱ-ՅՈՒՂԱՏՈՒ ԿՈՒԼՏՈՒՐԱՆԵՐԻ ԵՎ ԴԵՂԱԲՈՒՅՍԵՐԻ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

Օղակի այն կոլխոզնիկները, որոնք գերակատարել են եթերա-յուղատու կուլտուրաների ու դեղատու բույսերի (խորդենի, կազանլիկի վարդ, լվածաղիկ) բերքատվության պլանը օղակին ամրացված ցանքի ամբողջ տարածության վրա, լրացուցիչ վարձատրություն են ստանում փողով՝ հաշված 50 տոկոս՝ կոլխոզում եթերա-յուղատու կուլտուրաների ու դեղաբույսերի արտադրանքի մեկ ցենտների միջին արժեքից, ներառյալ հիմնական վարձատրությունը և կոլխոզի ստացած պարգև-հավելումները։



4. Սահմանել անասնաբուծական ֆերմաներում աշխատող կոլխոզնիկների աշխատանքի լրացուցիչ վարձատրության հետևյալ չափերը՝ կաթնատվության, մատղաշների աճեցման, գիրացման, բրդի քանակի և անասնաբուծության մթերատվության այլ ցուցանիշների պլանային առաջադրանքները գերակատարելու համար։

## ԽՈՇՈՐ ԵՂՋԵՐԱՎՈՐ ԱՆԱՍՈՒՆՆԵՐԻ ՖԵՐՄԱՆԵՐՈՒՄ

**Կթվոր-անասնապահուհուն**, որը հասել է կովերի ամրացված խմբի կաթնատվության պլանի գերակատարման, տալ սահմանված պլանից ավելի կթված կաթի 20 տոկոսը։

**Անասնապահ-հովվին**, կովերի իր սպասարկած ամբողջ խմբի կաթնատվության պլ-

լանը գերակատարելու դեպքում, տալ սահմանված պլանից ավելի ստացված կաթի 10 տոկոսը։

**Կթվոր-անասնապահուհուն**, որը հորթեր է ստացել տարվա սկզբին նրան ամրացված խմբում տարվա սկզբին եղած կովերի ու երինջների ամբողջ քանակից և լրիվ պահպանել է դրանք մինչև 15—20 օրական հասակում հորթապահին հանձնելը, տալ 75 լիտր կաթ։

**Կթվոր-անասնապահուհուն**, հորթերին ձեռքով կերակրելու դեպքում, նրան ամրացված կովերից և երինջներից ստացված բոլոր հորթերին մինչև 6 ամսական հասակն աճեցնելու համար, տալ մեկ կիլոգրամ միս (հաշված կենդանի քաշով)՝ նրա աճեցրած յուրաքանչյուր հորթի համար։

Բացի դրանից, բոլոր հորթերը պահպանելու և նրանց օրական միջին քաշաճի ավելացման պլանը գերակատարելու դեպքում, տալ մեկական կիլոգրամ միս (հաշված կենդանի քաշով) պլանից ավելի ստացված յուրաքանչյուր 10 կիլոգրամ քաշաճի համար։

**Կթվոր-անասնապահուհուն**, հորթերին ծծեցնելով աճեցնելու դեպքում, մինչև կովերի ու երինջների ամրացված խմբից բոլոր հորթերին կտրելը՝ աճեցնելու և պահպանե-



լու համար, եթե կատարված է կթի պլանը, տալ 1-ական կիլոգրամ միս (կենդանի քաշով հաշված), ստացված ու աճեցված յուրաքանչյուր հորթի համար։

**Հորթապահուհուն**, նրան ամրացված բոլոր հորթերին պահպանելու և մինչև 6 ամսական հասակն աճեցնելու համար տալ 0,5-ական կիլոգրամ միս (կենդանի քաշով հաշված), աճեցրած յուրաքանչյուր հորթի համար։

Բացի դրանից, աճեցման համար ստացված բոլոր հորթերի լրիվ պահպանման և հորթերի ամրացված խմբի գծով օրական միջին քաշաճի պլանը գերակատարելու դեպքում տալ 0,5-ական կիլոգրամ միս (կենդանի քաշով հաշված), սահմանված պլանից ավելի ստացված յուրաքանչյուր 10 կիլոգրամ քաշաճի համար։

**Անասնապահին**, որն աճեցնում է 6 ամսականից մինչև 1 տարեկան հասակի հորթեր, հորթերի լրիվ պահպանման և օրական միջին քաշաճի պլանը գերակատարելու համար տալ 0,5-ական կիլոգրամ միս (կենդանի քաշով հաշված), սահմանված պլանից ավելի ստացված յուրաքանչյուր 10 կիլոգրամ քաշաճի համար։

**Անասնապահին**, որն աճեցնում է խոշոր

եղջերավոր անասունների մատղաշը 1-ից մինչև 2 տարեկան հասակը, մատղաշի լրիվ պահպանման և օրական միջին քաշաճի պլանը գերակատարելու համար տալ 0,5-ական կիլոգրամ միս (կենդանի քաշով հաշված), սահմանված պլանից ավելի ստացված յուրաքանչյուր 10 կիլոգրամ քաշաճի համար։

Այն կոլխոզնիկներին, որոնք աշխատում են անասնաբուծական բրիգադաներում խոշոր եղջերավոր անասունների արոտային և մսուրային գիրացման գծով և արոտային կամ մսուրային գիրացման եռամսյա ժամանակամիջոցում հասել են հասակավոր անասունների գծով ավելի քան 15 տոկոս քաշաճի ու մատղաշի գծով ավելի քան 25 տոկոս՝ նրանց սկզբնական քաշի համեմատությամբ, տալ 0,5-ական կիլոգրամ միս (կենդանի քաշով հաշված), սահմանված պլանից ավելի ստացված յուրաքանչյուր 10 կիլոգրամ քաշաճի համար։

Բրիգադիրին կամ բրիգադա ունեցող ֆերմայի վարիչին, ֆերմայում կթի պլանի գերակատարման և տարվա սկզբին առկա յուրաքանչյուր 100 կովից, մատակից ու երինջից անասունների առնվազն 85 գլուխ մատղաշի պահպանման ու աճեցման համար տալ



սահմանված պլանից ավելի կթված կաթի 3 տոկոսը։

Երկու և ավելի թվով բրիգադաներ ունեցող ֆերմայի վարիչին, ֆերմայում նույն այդ ցուցանիշների գերակատարման համար տալ սահմանված պլանից ավելի կթված կաթի 2 տոկոսը։

## ՈՉԽԱՐԱԲՈՒԾԱԿԱՆ (ԱՅԾԱԲՈՒԾԱԿԱՆ) ՖԵՐՄԱՆԵՐՈՒՄ

Ոչխարաբուծական (այծաբուծական) բրիգադաների ճովիվներին, ոչխարների (այծերի) նրանց ամրացված հոտից բրդի խուզման պլանը գերակատարելու համար կոլխոզի վարչության հայեցողությամբ տալ պլանից ավելի ստացված բրդի 10 տոկոսը (իսկ այծի բրդի 20 տոկոսը) նատուրայով, կամ թե բրդի արժեքի 10 տոկոսը՝ դրամով։

Ոչխարաբուծական բրիգադաների այն հովիվներին, որոնք ապահովել են 50 տոկոսից ավելի այնպիսի բրդի ստացումը (նուրբ կամ կիսակոպիտ), որն ըստ ստանդարտի դասված է նորմալ գեղմայինի շարքը, տալ 50 տոկոսից ավելի ստացված բրդի 3 տոկոսը՝ նատուրայով, կամ թե այդ բրդի արժեքի 3 տոկոսը՝ դրամով։

Գառների (ուլերի) աճեցման պլանը գե-

*րակատարելու համար, հովիվներին տալ դրամով 1 գառան մորթու միջին արժեքը կամ նատուրայով 1 գառան մորթի, պլանից ավելի աճեցված յուրաքանչյուր 3 գառի (ուլի) համար, հաշվի առնելով այն գառները, որոնք պլանի համաձայն, մորթվել են իբրև մորթացու։*

*Այն հովիվներին, որոնք գերակատարել են ոչխարների և այծերի կթի պլանը, տալ սահմանված պլանից ավելի ստացված կաթի կամ պանրի 5 տոկոսը։*

*Ոչխարների և այծերի* **կթվորուհուն**, *որը ոչխարների (այծերի) նրան ամրացված խմբի գծով գերակատարել է կթի պլանը, տալ սահմանված պլանից ավելի նրա կըթած կաթի 10 տոկոսը, եթե լիովին պահպանված են գառները (ուլերը)։*

**Ոչխարաբուծական (այծաբուծական) այն ֆերմայի վարիչին**, *որն ունի երկու և ավելի թվով բրիգադաներ— բրդի խուզման պլանը գերակատարելու համար, եթե կատարված է գառների (այծերի) աճեցման պլանը, կոլխոզի վարչության հայեցողությամբ տալ ամբողջ ֆերմայում պլանից ավելի ստացված բրդի 2 տոկոսը՝ նատուրայով— ոչխարաբուծական, և 4 տոկոսը—այծաբուծական ֆերմաներում, կամ դրամով՝ բրդի արժեքի*



*2 տոկոսը—ոչխարաբուծական և 4 տոկոսը— այծաբուծական ֆերմաներում։*

*Բացի դրանից, ոչխարաբուծական* **ֆերմայի վարիչին**, *այնպիսի քանակությամբ նորմալ գեղմային բուրդ ստանալու դեպքում, որ սահմանված է ոչխարաբուծական բրիգադաների հովիվների համար, տալ լրացուցիչ վարձատրություն բրդով կամ դրամով այն միջին վարձատրության չափով, որն ընկնում է 1 հովվին բրդի որակի համար։*

**Ֆերմայի վարիչին**, *ոչխարների և այծերի կթի պլանը գերակատարելու համար տալ սահմանված պլանից ավելի ստացված կաթի կամ պանրի 5 տոկոսը։*

## *ԽՈԶԱԲՈՒԾԱԿԱՆ ՖԵՐՄԱՆԵՐՈՒՄ*

**Խոզապահներին**— *նրանց ամրացված մայր խոզերի խմբի գծով խոճկորները մինչև 2 ամսական հասակն աճեցնելու պլանի գերակատարման համար տալ սահմանված պլանից ավելի ստացված մինչև 2 ամսական հասակի յուրաքանչյուր 5 խոճկորից մեկը։*

*Խոզաբուծական բրիգադաների* **կոլխոզնիկներին**— *խոզերի գիրացման և նրանց միջին կենդանի քաշի պլանը գերակատարելու համար տալ 15 կիլոգրամ միս (կեն-*

դանի քաշով հաշված), գիրացված խոզերի ամբողջ քանակից պլանից ավելի ստացված յուրաքանչյուր 100 կիլոգրամ քաշաճի համար։

**Բրիգադիրին կամ ֆերմայի վարիչին**— *խոզերի գիրացման պլանն ամբողջ ֆերմայում գերակատարելու, ինչպես նաև խոճկորների աճեցման պլանը կատարելու համար տալ 4-ական կիլոգրամ միս (կենդանի քաշով հաշված), գիրացված խոզերի ամբողջ քանակից պլանից ավելի ստացված յուրաքանչյուր 100 կիլոգրամ քաշաճի համար։*

*Բացի դրանից, այն բրիգադիրին կամ ֆերմայի վարիչին, որին անմիջականորեն ամրացված է մայր խոզերի խումբը՝ խոճկորների աճեցման համար, ինչպես նաև ամրացված են խոզեր՝ գիրացման համար, տրվում է լրացուցիչ վարձատրություն նրան ամրացված խմբի գծով պլանը գերակատարելու համար այն պայմաններով, որոնք սահմանված են խոզաբուծական բրիգադայի կոլխոզնիկների համար։*

## *ՁԻԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ*

**Ձիապահին**— *նրան ամրացված բոլոր զամբիկներից (բեղմնավորման տեսակետից*



*պիտանի) մտրուկներ ստանալու համար և ստացված աճը մինչև կաթից կտրելը լրիվին պահպանելու ու աճեցնելու համար լրացուցիչ կերպով վճարել տոհմային զամբիկից (որը տոմարագրված է տոհմային մատյանում) ստացված յուրաքանչյուր մտրուկի համար 50-ական ռուբլի և ոչ-տոհմային զամբիկից ստացված յուրաքանչյուր մտրուկի համար՝ 25-ական ռուբլի։*

**Ձիապահին**—*նրան ամրացված բոլոր մտրուկները կաթից կտրելուց հետո մինչև մեկ ու կես տարեկան հասակը պահպանելու և աճեցնելու համար լրացուցիչ կերպով վճարել 25-ական ռուբլի յուրաքանչյուր տոհմային մտրուկի համար և 15-ական ռուբլի՝ յուրաքանչյուր ոչ-տոհմային մտրուկի համար։*

**Ձիաբուծական բրիգադայի բրիգադիրին կամ ձիաբուծական ֆերմայի վարիչին**— *մտրուկների աճեցման պլանը գերակատարելու համար՝ եթե կատարված է ձիերի գլխաքանակի պլանը, լրացուցիչ կերպով վճարել 50-ական ռուբլի, մինչև տարվա վերջը պլանից ավելի աճեցված յուրաքանչյուր մտրուկի համար։*

**Ձիարածների բրիգադային**— *բրիգադային ամրացված բոլոր զամբիկներից (բեղմնավորման տեսակետից պիտանի) մտրուկ-*

*ներ ստանալու և նրանց մինչև կաթից կտրելը լրիվին պահպանելու ու աճեցնելու համար լրացուցիչ կերպով վճարել՝ տոհմային մատյանում տոմարագրված զամբիկներից ստացված յուրաքանչյուր մտրուկի համար 20-ական ռուբլի և ոչ-տոհմային զամբիկից ստացված յուրաքանչյուր մտրուկի համար՝ 10-ական ռուբլի։*

Ձիարածների բրիգադային, *որը սպասարկում է մատղաշը—բրիգադային ամրացված բոլոր մտրուկները տարվա ընթացքում պահպանելու և աճեցնելու համար լրացուցիչ կերպով վճարել 25-ական ռուբլի՝ յուրաքանչյուր տոհմային մտրուկի համար և 15-ական ռուբլի՝ յուրաքանչյուր ոչ-տոհմային մտրուկի համար։*

Կոլխոզնիկներին— *ջորիների աճեցման գծով նրանց համար սահմանված առաջադրանքը կատարելու դեպքում, աճեցված յուրաքանչյուր մատղաշ ջորու համար տալ լրացուցիչ դրամական վարձատրություն՝ մտրուկների աճեցման համար ձիապահին սահմանված լրացուցիչ վարձատրության կրկնակի չափով։*

Կոլխոզնիկներին— *նրանց ամրացված խմբի բոլոր մայր էշերից քուռակներ ստանալու համար և այդ քուռակները լրիվին*



*պահպանելու ու աճեցնելու համար լրացուցիչ կերպով վճարել յուրաքանչյուր քուռակի համար 50-ական ռուբլի։*

## *ՃԱԳԱՐԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ, ԹՌՉՆԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ ԵՎ ՄԵՂՎԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ*

*Ճագարաբուծական բրիգադների* կոլխոզնիկներին— *մինչև 6 ամսական հասակի ճագարների աճեցման պլանը գերակատարելու համար տալ պլանից ավելի նրանց աճեցրած ճագարիկների 25 տոկոսը.*

*ճագարի մորթու հանձնման (վաճառքի) պլանն առաջին տեսակով գերակատարելու համար տալ դրամական վարձատրություն պլանից ավելի առաջին տեսակով հանձնըված մորթիների արժեքի 15 տոկոսի չափով.*

*անգորական ճագարների աղվամազի հանձնման (վաճառքի) պլանը գերակատարելու համար տալ պլանից ավելի հանձնըված աղվամազի արժեքի 25 տոկոսը։*

Թռչնաբուծական բրիգադայի կոլխոզնիկներին— *թռչունների ձվատվության պլանը գերակատարելու համար տալ պլանից ավելի ստացված ձվի 15 տոկոսը, և բրիգադային ամրացված թռչունների գլխաքանա-*

կի սահմանված պլանից ավելի աճեցված ճուտերի կեսը։

Մեղվապահներին— մեղրի բերքի պլանը գերակատարելու համար, եթե կատարված է մոմ ստանալու պլանը և պահպանված է մեղվաընտանիքների քանակը, տալ պլանից ավելի ստացված մեղրի 15 տոկոսը։

Անասնաբուծական ոչ-մեծ ֆերմաներ ունեցող կոլխոզներում, որտեղ բոլոր ֆերմաները կառավարում է մեկ անձնավորություն, վարիչին՝ պլանը գերակատարելու համար տալ լրացուցիչ վարձատրություն նույն չափերով, ինչպես որ համապատասխան ճյուղային ֆերմայի վարիչին։

5. 1941 թվականի համար հաստատել Հայկական ՍՍՌ կոլխոզներում այն գյուղատնտեսական կուլտուրաների միջին բերքատվության պլանը և բազմամյա կուլտուրաների տունկերի աճեցման պլանը, որոնց գծով սահմանված բերքատվությունը գերակատարելու համար տրվում է լրացուցիչ վարձատրություն.

| | | | | |
|---|---|---|---|---|
| Բոլոր տեսակի հացահատիկային կուլտուրաներ՝ | 1 հեկտարից | | 12,0 | ցենտ. |
| Այդ թվում՝ աշնանացան ցորեն | » | » | 13,4 | » |



| | | | | |
|---|---|---|---|---|
| աշնանացան տարեկան | » | » | 12,0 | » |
| աշնանացան գարի | » | » | 13,2 | » |
| գարնանացան ցորեն | » | » | 10,0 | » |
| գարնանացան գարի | » | » | 12,0 | » |
| վարսակ | » | » | 11,0 | » |
| կորեկ | » | » | 7,5 | » |
| եգիպտացորեն | » | » | 18,0 | » |
| բրինձ | » | » | 40,0 | » |
| հաճար | » | » | 9,0 | » |
| վիկի հատիկ | » | » | 6,0 | » |
| հատիկաընդեղ-ղեններ | » | » | 9,0 | » |

Տեխնիկական կուլտուրաներ

| | | | | |
|---|---|---|---|---|
| բամբակ | 1 հեկտարից | | 20,5 | ցենտ. |
| շաքարի ճակնդեղ | » | » | 210,0 | » |
| ծխախոտ | » | » | 8,5 | » |
| գանգրավուշ | » | » | 4,5 | » |

| | | | | |
|---|---|---|---|---|
| արևածաղիկ | » | » | 11,0 | » |
| արախիս | » | » | 7,0 | » |
| խորդենի | » | » | 140,0 | » |
| Կազանլիկի վարդ 2-րդ տարվա | » | » | 5,0 | » |
| 3—4-րդ տարիների | » | » | 15,0 | » |
| 5-րդ տարվա | » | » | 20,0 | » |
| լվածաղիկ ծաղիկներ | » | » | 0,8 | » |
| սերմ | » | » | 1,7 | » |
| կանաչ մասսա | » | » | 2,0 | » |

## Կերի կուլտուրաներ

| | | | |
|---|---|---|---|
| բազմամյա խոտաբույսերի առաջին տարվա հնձի խոտ | մեկ հեկտ. | 20,0 | » |



| | | | | |
|---|---|---|---|---|
| նախորդ տարիների բազմամյա խոտաբույսերի խոտ | » | » | 35,0 | » |
| միամյա խոտաբույսեր | » | » | 20,0 | » |
| բնական խոտհարքների խոտ | » | » | 12,0 | » |
| կերի արմատապտուղներ | » | » | 200,0 | » |
| առվույտի սերմ | » | » | 1,5 | » |
| կորնգանի սերմ | » | » | 6,0 | » |
| երեքնուկի սերմ | » | » | 1,5 | » |

## Բանջարանոցա-բոստանային կուլտուրաներ և կարտոֆել

| | | | | |
|---|---|---|---|---|
| կարտոֆել | 1 | հեկտ. | 95,0 | ցենտ. |
| վաղահաս կաղամբ | » | » | 120,0 | » |
| ուշ հասունացող կաղամբ | » | » | 200,0 | » |
| պոմիդոր | » | » | 165,0 | » |
| վարունգ | » | » | 100,0 | » |
| սեղանի ճակնդեղ | » | » | 180,0 | » |

| | | | | |
|---|---|---|---|---|
| պղպեղ | » | » | 160,0 | » |
| գազար | » | » | 120,0 | » |
| սոխ | » | » | 150,0 | » |
| բադրիջան | » | » | 160,0 | » |
| բոստանային կուլտուրաներ | » | » | 150,0 | » |

### Բանջարանոցային կուլտուրաների և կերի արմատապտուղների սերմեր

| | | | | |
|---|---|---|---|---|
| կաղամբ | 1 հեկտ. | | 2,5 | ցենտ. |
| գազար | » | » | 2,0 | » |
| սեղանի ճակնդեղ | » | » | 7,0 | » |
| կերի ճակնդեղ | » | » | 7,0 | » |
| վարունգ | » | » | 1,5 | » |
| պոմիդոր | » | » | 0,4 | » |
| սոխ | » | » | 2,8 | » |

### Պտղատու կուլտուրաներ և խաղող

| | | | | |
|---|---|---|---|---|
| խաղող | 1 հեկտ. | | 70,0 | ցենտ. |
| հնդավոր պտուղների այգիներ | » | » | 50,0 | » |
| կորիզավոր պտուղների այգիներ | » | » | 60,0 | » |



### Պտղատու կուլտուրաների և խաղողի տնկարաններ

| | |
|---|---|
| Ստանդարտ մատերի և ամերիկյան որթի ստացումը 1 հեկտար մայրաթփից | 42 հազ. հատ |
| Խաղողի միաչքանի տնկանյութի ստացումը ջերմոցի օգտակար տարածության 1 քառակուսի մետրից | 150 հատ |
| Խաղողի որթի պատվաստված ստանդարտ տունկերի ստացումը 1 հեկտար տնկարանից | 40 հազ. հատ |
| Սեփական արմատներ ունեցող ստանդարտ տունկերի ստացումը 1 հեկտար տնկարանից | 60 հազ. հատ |
| Պտղատու ստանդարտ վայրակների ստացումը տնկարանների 1 հեկտարից | 210 հազ. հատ |
| Հնդավոր պտղատու երկամյա ստանդարտ տունկերի ստացումը 1 հեկտար տնկարանից | 18 հազ. հատ |
| Կորիզավոր պտղատու միամյա ստանդարտ տունկերի ստացումը 1 հեկտար տնկարանից | 20 հազ. հատ |

6. 1941 թվականի համար հաստատել Հայկական ՍՍՌ կոլխոզներում անասնաբուծության մթերատվության առաջա-

դրանքները, որոնց գերակատարման դեպքում կոլխոզնիկներին տրվում է լրացուցիչ վարձատրություն.

Յուրաքանչյուր ֆուրաժային կովից և մատակից ստացվող կաթի քանակը — 800 լիտր։ Հորթերի պահպանումն ու աճեցումը տարվա սկզբին առկա յուրաքանչյուր 100 կովից, մատակից և երինջից — 85 գլուխ։ Խոշոր եղջերավոր անասունների հորթերի և մատղաշի օրական միջին քաշաճը (գրամներով)՝

| ԱՆԱՍՈՒՆՆԵՐԻ ՑԵՂԵՐԸ | Մինչև 6 ամսական հասակը | 6 ամսակա-նից մինչև 1 տարեկան | 1 տարեկա-նից մինչև 2 տարեկան |
|---|---|---|---|
| Սիմմենտալ և շվից | 550 | 450 | 350 |
| Սիմմենտալ ու շվից ցեղերի մետիսներ և գոմեշներ | 400 | 350 | 300 |
| Տեղական անասուններ | 350 | 300 | 250 |



Խոճկորների աճեցումը տարվա սկզբին կոլխոզում առկա 9 ամսականից բարձր յուրաքանչյուր մայր խոզից — 10 գլուխ

Գիրացված խոզի կենդանի քաշը, գիրացման սահմանված պլանը կատարելու պայմանով — 70 կիլոգրամ

Տարվա սկզբին կոլխոզում առկա յուրաքանչյուր գլուխ ոչխարից ստացվելիք բրդի քանակը — 2,0 »

Տարվա սկզբին, կոլխոզում առկա յուրաքանչյուր մայր այծից ստացվելիք մազի քանակը — 0,6 »

Գառների աճեցումը տարվա սկզբին առկա յուրաքանչյուր 100 մաքիներից և 1 տարեկանից բարձր շիշակներից — 90 գլուխ

Ուլերի աճեցումը տարվա սկզբի կոլխոզում առկա յուրաքանչյուր 100 մայր այծերից և 1 տարեկանից բարձր մայր այծիկներից — 125 »

### Յուրաքանչյուր ֆուրաժային ոչխարից և այծից ստացվելիք կաթի քանակը

| | |
|---|---|
| կոպտաբուրդ ոչխարներ | 60 լիտր |
| նրբագեղմ ոչխարների մետիսներ | 40 » |
| տեղական ցեղերի այծեր | 70 » |
| անգորական այծեր (մետիսներ) | 45 » |

Մինչև 6 ամսական հասակի ճագարիկների ստացումը տարվա սկզբին առկա յուրաքանչյուր մայր ճագարից 10 գլուխ

Աղվամազի ստացումը տարվա սկզբին առկա յուրաքանչյուր անգորական ցեղի մայր ճագարից՝ աճի հետ միասին 500 գրամ

1-ին տեսակի մորթիների հանձնման չափը՝



հանձնված մորթիների ընդհանուր քանակի համեմատությամբ 40 տոկոս

Ձու ածող յուրաքանչյուր հավի ձվատվությունը 70 ձու
յուրաքանչյուր-բադի 35 ձու
յուրաքանչյուր հնդկահավի 25 ձու

Թռչունների մատղաշի աճեցումը մինչև 6 ամսական հասակը՝ ճուտեր և բադիկներ 80 տոկոս
հնդկահավիկներ 70 տոկոս

Մինչև 6 ամսական սագիկների աճեցումը տարվա սկզբին առկա յուրաքանչյուր սագից 5 հատ

Մեղրի համախառն բերքը 1 մեղվաընտանիքից 30 կիլոգրամ
այդ թվում՝ ապրանքային մեղր 10 »

Մոմի համախառն բերքը 0,6 »

7. Հայկական ՍՍՌ Ժողովրդական Կոմիսարների Սովետին և Հայաստանի Կ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեին՝ այս որոշմանը համապատասխան, տասնօրյա ժամկետում շրջանների համար սահմանել գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և անասնաբուծության մթերատվության պլանային առաջադրանքները, իսկ աշխատավորների դեպուտատների շրջանային սովետների գործկոմներին և Հայաստանի Կ(բ)Պ շրջկոմներին՝ տասնօրյա ժամկետում սահմանել առաջադրանքներն ըստ կոլխոզների։

Բերքատվության և անասնաբուծության մթերատվության պլանը բրիգադների, օղակների և անասնաբուծական ֆերմաների համար նախապես մշակվում է կոլխոզի վարչության կողմից՝ ագրոնոմի և զոոտեխնիկի անպայման մասնակցությամբ, որից հետո քննարկվում և հաստատվում է կոլխոզի անդամների ընդհանուր ժողովի կողմից։

8. Կոլխոզներին հանձնարարել՝ բերքատվության և անասնաբուծության մթերատվության պլանի գերակատարման համար կոլխոզնիկներին լրացուցիչ վարձատրություն տալ այն դեպքում, եթե կոլխոզնիկը փետրվարի 15-ից մինչև դեկտեմբերի 1-ը ժամանակաշրջանում կոլխոզային արտադրությանը



մասնակցել է առնվազն հետևյալ քանակությամբ բանվորական օրեր— բամբակ, խորդենի և բազմամյա կուլտուրաներ մշակող կոլխոզներում— 160 բանվորական օր, մնացած կոլխոզներում— 120 բանվորական օր։

Անասնաբուծական բրիգադներում լրացուցիչ վարձատրություն տալ այն կոլխոզնիկներին, որոնք տարվա ընթացքում կոլխոզում աշխատել են առնվազն 220 բանվորական օր։

Այն կոլխոզնիկներին, որոնք բամբակի և բազմամյա կուլտուրաների ցանքեր ունեցող կոլխոզներում փետրվարի 15-ից մինչև դեկտեմբերի 1-ը ժամանակաշրջանում աշխատանքներին մասնակցել են 160 բանվորական օրից պակաս, բայց 120 օրից ավելի, իսկ մնացած կոլխոզներում՝ 120 բանվորական օրից պակաս, բայց 90 օրից ավելի, իսկ անասնաբուծական բրիգադների այն կոլխոզնիկներին, որոնք տարվա ընթացքում կոլխոզում աշխատել են 220 բանվորական օրից պակաս, բայց 170 օրից ավելի— բերքատվության և անասնաբուծության մթերատվության պլանների գերակատարման համար լրացուցիչ վարձատրություն տրվում է կիսով չափ։

9. Բանվորական օրերի սահմանված քանակը չկատարելու դեպքում, բերքատվության և անասնաբուծության մթերատվության պլանների գերակատարման համար լրացուցիչ վարձատրություն ստանալու իրավունքը պահպանվում է այն կոլխոզնիկուհիների վերաբերմամբ, որոնք գտնվել են հղիության արձակուրդի մեջ, այն կոլխոզնիկների վերաբերմամբ, որոնք գտնվել են զինվորական հավաքներում, կանչված են եղել Կարմիր Բանակի ու Ռազմա-Ծովային Նավատորմի շարքերը, և այն անձանց վերաբերմամբ, որոնք կոլխոզներից կազմակերպված հավաքագրման կարգով գնացել են աշխատելու արդյունաբերության մեջ, տրանսպորտում և ժողովրդական տնտեսության այլ ճյուղերում, ինչպես նաև ուղարկվել են սովորելու, առաջ են քաշվել ղեկավար աշխատանքի, եթե պակասող բանվորական օրերի քանակը համապատասխանում է հիշյալ պատճառներով աշխատանքի մեջ կատարված ընդհատմանը։

10. Սահմանել, որ պլանների գերակատարման համար կոլխոզնիկներին հասանելիք լրացուցիչ վարձատրությունը բաշխվում է հետևյալ կերպ.

ա) օղակում— այն աշխօրերի քանակի համեմատ, որ օղակի յուրաքանչյուր կոլ-



խոզնիկ վաստակել է օղակին ամրացված տվյալ կուլտուրայի գծով.

բ) բրիգադայում—այն աշխօրերի քանակի համեմատ, որ կոլխոզնիկները վաստակել են անմիջականորեն բրիգադային ամրացված հացահատիկային և այլ ոչ-հերաշար կուլտուրաների գծով (այն աշխօրերը, որոնք օղակի կոլխոզնիկները վաստակել են օղակին ամրացված կուլտուրաների գծով, հաշվի է առնվում միայն օղակում).

գ) ոչխարաբուծական, այծաբուծական, թռչնաբուծական, ճագարաբուծական ֆերմաներում և մեղվանոցներում— համապատասխան ֆերմաներում և մեղվանոցում վաստակած աշխօրերի քանակին համեմատ։

11. Դաշտավարական բրիգադայի բրիգադավարին՝ անմիջականորեն բրիգադային ամրացված հացահատիկային և այլ ոչ-հերաշար կուլտուրաների բերքատվության պլանը գերակատարելու համար տալ լրացուցիչ վարձատրություն այդ բրիգադայի կոլխոզնիկների ստացած միջին լրացուցիչ վարձատրության մեկ և կեսի չափով։

Բացի դրանից, բրիգադավարներին լրացուցիչ վարձատրություն տալ օղակների կողմից տեխնիկական, բոստանային կուլտուրաների, բանջարանոցային և այլ հերա-

շար կուլտուրաների ու բազմամյա տունկերի բերքատվության պլանը գերակատարելու համար։

Բրիգադայի կազմի մեջ մտնող բոլոր օղակների կողմից բերքատվության պլանը կատարելու նպատակով բրիգադավարի մեջ շահագրգռվածություն ստեղծելու նպատակով սահմանել, որ օղակներին ամրացված կուլտուրաների համար բրիգադավարին լրացուցիչ վարձատրություն է տրվում այն դեպքում և այն կուլտուրաների համար, որոնց բնագավառում օղակների առնվազն կես մասը գերակատարել է նրանց համար սահմանված բերքատվությունը։

Բրիգադավարի լրացուցիչ վարձատրության չափը պետք է հաշվել հետևյալ կերպ. բերքատվության պլանը գերակատարած օղակներին պատկանող կոլխոզնիկների ստացած լրացուցիչ վարձատրության ամբողջ գումարը բաժանվում է բրիգադայի այն բոլոր օղակների կոլխոզնիկների թվի վրա, որոնց ամրացված են տեխնիկական և այլ հեռաշար կուլտուրաների ու բազմամյա տունկերի ցանքերի տարածություններ, և ստացված միջինը կկազմի բրիգադավարի լրացուցիչ վարձատրությունը։

12. Իր սպասարկած օղակների տեխնիկա-



կան, հեռաշար կուլտուրաների և բազմամյա տունկերի բերքատվության պլանի գերակատարման նպատակով տողի մեջ շահագրգռվածություն ստեղծելու համար, սահմանել, որ տողը լրացուցիչ վարձատրություն է ստանում այն դեպքում և տեխնիկական, հեռաշար կուլտուրաների ու բազմամյա այն տունկերի համար, որոնց բնագավառում իր սպասարկած օղակների առնվազն կես մասը գերակատարել է նրանց համար սահմանված բերքատվությունը։

Տողի լրացուցիչ վարձատրության չափը պետք է հաշվել հետևյալ կերպ. բերքատվության պլանը գերակատարած օղակների կոլխոզնիկների ստացած լրացուցիչ վարձատրության ամբողջ գումարը բաժանվում է բրիգադայի մեջ նրա սպասարկած բոլոր օղակների կոլխոզնիկների թվի վրա, որոնց ամրացված են տեխնիկական, հեռաշար կուլտուրաների ու բազմամյա տունկերի ցանքերի տարածությունները։ Ստացված միջին թիվը կկազմի տողի լրացուցիչ վարձատրությունը։

Անմիջականորեն բրիգադային ամրացված հացահատիկային և այլ ոչ-հեռաշար կուլտուրաների բերքատվության պլանը գերակատարելիս, տողերը լրացուցիչ վարձա-

տրություն են ստանում բրիգադային մնացած կոլխոզնիկներին հավասար, այդ կուլտուրաների բնագավառում ստացված աշխօրերի քանակի համաձայն։

13. Սկսած 1941 թվականից Հայկական ՍՍՌ կոլխոզներում սահմանել կոլխոզների նախագահների վարձատրության հետևյալ կարգը.

ա) ոռոգելի հողագործության շրջաններում կոլխոզների նախագահների համար աշխօրեր հաշվել աշխատանքի յուրաքանչյուր ամսվա համար հետևյալ չափով. կոլխոզի ցանքային տարածությունը մինչև 100 հեկտարի հասնելու դեպքում (ներառյալ բանջարանոցները, այգիներն ու հատապտղաբանները)— 45 աշխօր, 101-ից մինչև 200 հեկտարի՝ 50 աշխօր, 201-ից մինչև 400 հեկտարի՝ 55 աշխօր, 401-ից մինչև 600 հեկտարի՝ 60 աշխօր, 601-ից մինչև 800 հեկտարի՝ 70 աշխօր, 801-ից մինչև 1200 հեկտարի՝ 80 աշխօր և 1200 հեկտարից ավելի՝ 90 աշխօր ամսական։

բ) մյուս շրջաններում կոլխոզների նախագահների համար աշխատանքի մի ամսվա աշխօրերը հաշվել հետևյալ չափով՝ կոլխոզում ցանքային տարածությունը 100 հեկտարի հասնելու դեպքում (ներառյալ բանջարանոցները, այգիներն ու հատապտղաբան-



ները)— 45 աշխօր, 101-ից մինչև 300 հեկտարի՝ 50 աշխօր, 301-ից մինչև 500 հեկտարի՝ 55 աշխօր, 501-ից մինչև 700 հեկտարի՝ 60 աշխօր, 701-ից մինչև 1000 հեկտարի՝ 70 աշխօր, 1001-ից մինչև 1500 հեկտարի՝ 80 աշխօր և 1500 հեկտարից ավելի՝ 90 աշխօր ամսական։

գ) կոլխոզների նախագահներին վճարել ամսական լրացուցիչ դրամական վարձատրություն հետևյալ չափով՝ դրամական եկամտի ընդհանուր գումարը մինչև 10 հազար ռուբլու հասնելիս՝ 25 ռուբլի, 10-ից մինչև 25 հազար ռուբլու՝ 50 ռուբլի, 25-ից մինչև 50 հազար ռուբլու՝ 75 ռուբլի, 75-ից մինչև 100 հազար ռուբլու՝ 125 ռուբլի, 100-ից մինչև 200 հազար ռուբլու՝ 150 ռուբլի, 200-ից մինչև 300 հազար ռուբլու՝ 175 ռուբլի, 300-ից մինչև 400 հազար ռուբլու՝ 200 ռուբլի, 400-ից մինչև 500 հազար ռուբլու՝ 225 ռուբլի, 500-ից մինչև 600 հազար ռուբլու՝ 250 ռուբլի, 600-ից մինչև 700 հազար ռուբլու՝ 275 ռուբլի, 700-ից մինչև 800 հազար ռուբլու՝ 300 ռուբլի, 800-ից մինչև 900 հազար ռուբլու՝ 325 ռուբլի, 900 հազարից մինչև 1 միլիոն ռուբլու՝ 350 ռուբլի, 1 միլիոն ռուբլու և ավելի՝ 400 ռուբլի ամսական։

դ) մինչև դրամական եկամտի վերջնական գումարը պարզվելը կոլխոզների նախագահ-

ների լրացուցիչ վարձատրության չափը սահմանել ելնելով նախորդ տարվա դրամական եկամուտի գումարից: Կոլխոզների նախագահներին ամսական վճարել սահմանված լրացուցիչ վարձատրության 70 տոկոսը:

Կոլխոզների նախագահների հետ վերջնական հաշվեհաս է կատարվում տարվա վերջին, տարեկան հաշվետվությունը կոլխոզնիկների ընդհանուր ժողովի կողմից հաստատվելուց և կոլխոզի տարեկան հաշվետվությունը աշխատավորների դեպուտատների շրջանային Սովետի գործկոմի կողմից քննվելուց հետո:

ե) առաջարկել կոլխոզներին՝ լրացուցիչ աշխօրեր տալ կոլխոզների նախագահներին՝ նրանց աշխատանքի ստաժին, որոնք աշխատում են կոլխոզում երրորդ տարին — աշխօրերով հաշված ամսական սահմանված վարձատրության 5%-ի չափով, չորրորդ տարին՝ 10 %-ի չափով, 5 և ավելի տարի՝ 15 %-ի չափով:

14. Գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության և անասնաբուծության մթերատվության պլանը կոլխոզի կողմից գերակատարվելու համար սահմանել կոլխոզի նախագահին լրացուցիչ աշխօրեր և տալ դրամական վարձատրություն հետևյալ չափով:



| ԲԵՐՔԱՏՎՈՒԹՅԱՆ ԵՎ ՄԹԵՐԱՏՎՈՒԹՅԱՆ ՊԼԱՆԸ ԳԵՐԱԿԱՏԱՐԵԼՈՒ ՀԱՄԱՐ | Պլանի գերակատարման չափը | Լրացուցիչ վարձատրություն տոկոսներով՝ աշխօրերով ու դրամով ստացված ամսական վարձատրութ. նկատմամբ |
|---|---|---|
| Միջինը հացահատիկային կուլտուրաների բնագավառում . . . . . . . . | Մինչև 10 տոկոս<br>11—25 տոկոս<br>25 տոկոսից ավելի | 15 տոկոս<br>25 »<br>40 » |
| Բոլոր տեխնիկական կուլտուրաների և բանջարեղենի բնագավառում, բացի այն կուլտուրաներից, որոնց համար չի նախատեսված կոլխոզնիկների պարգևատրումը տվյալ և հատուկ որոշումներով ու պայմանագրերով, ինչպես նաև բոլոր բազմամյա տնկիների բնագավառում . | Մինչև 10 տոկոս<br>11—25 տոկոս<br>25 տոկոսից ավելի | 15 տոկոս<br>25 »<br>40 » |
| Երկու և ավելի անասնաբուծական ֆերմաների համար . . . . . . . . . . | Մինչև 10 տոկոս<br>11—25 տոկոս<br>25 տոկոսից ավելի | 15 տոկոս<br>25 »<br>40 » |

15. Սահմանել, որ կոլխոզում գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության պլանը գերակատարելու համար ագրոնոմը, կոլխոզի դաշտավարը, իսկ անասնաբուծության մթերատվության պլանը գերակատարելու համար՝ կոլխոզի զոոտեխնիկը լրացուցիչ վարձատրություն են ստանում 70 տոկոսի չափով լրացուցիչ այն վարձատրությունից, որը այդ նվաճումների համար սահմանված է կոլխոզի նախագահի համար։

Կոլխոզային ջրվարներին (կոլխոզային ջրօգտագործման վարիչներին) լրացուցիչ վարձատրություն տալ 50 տոկոսի չափով այն լրացուցիչ վարձատրությունից, որ սահմանված է կոլխոզի նախագահի համար։

16. Բերքատվության պլանի և անասնաբուծության մթերատվության առաջադրանքների գերակատարման համար կոլխոզնիկներին հասնող լրացուցիչ վարձատրությունը նատուրայով և փողով վճարել այն ժամանակ, երբ կոլխոզը կատարել է պետության հանդեպ գյուղատնտեսական մթերքներ հանձնելու պարտավորությունները, կազմել է սերմի, կերի, ապահովագրական և այլ կոլխոզային հանրային ֆոնդերը, կոլխոզում եկամուտները բաշխելու հետ միաժամանակ։



Կաթը, բանջարեղենը և այլ արտադրանքը, որ չի կարող երկար պահվել, տալ տարվա ընթացքում ավանսի կարգով այն ժամկետներին, որոնք սահմանում է կոլխոզի վարչությունը՝ նայած պետական պարտավորությունների կատարմանը։

17. Այն կապակցությամբ, որ աշխատանքի կազմակերպման օղակային սիստեմն իրականացվելու է արտադրական բրիգադաներում բոլոր տեխնիկական կուլտուրաների, բանջարեղենի, կարտոֆելի, բրնձի, կորեկի, եգիպտացորենի և այլ հեռաշար կուլտուրաների բնագավառում, ինչպես նաև գոյություն ունեցող օղակները պահպանելու նպատակով, կոլխոզներին առաջարկել օղակներ կազմելիս յուրաքանչյուր օղակին, որպես կանոն, ամրացնել ոչ ավելի քան 2—3 կուլտուրա առնվազն մեկ տարի ժամանակով, իսկ բազմամյա կուլտուրաների բնագավառում՝ առնվազն 5 տարի ժամանակով։

Հաշվի առնելով, որ օղակավարը աշխատում է օղակի մյուս բոլոր կոլխոզնիկների հետ հավասար և դրա հետ միասին ղեկավարում է օղակը, կոլխոզներին առաջարկել օղակը ղեկավարելու համար օղակավարին տալ լրացուցիչ աշխօրեր օղակի բոլոր անդամների ստացած աշխօրերի ամսական

ընդհանուր քանակի 2—3 տոկոսի չափով։

18. Ներկա որոշման կապակցությամբ Հայկական ՍՍՌ-ում ուժը կորցրած համարել՝

ա) ՍՍՌՄ Ժողկոմսովետի 1938 թ. մարտի 18-ի «Կարտոֆելի բերքատվությունը բարձրացնելու ձեռնարկումների մասին» № 349 որոշման 3-րդ հոդվածի «բ» կետը (ՍՍՌՄ Որոշումների ժողովածու, 1938 թ., № 14, էջ՝ 86)։

բ) ՍՍՌՄ Ժողկոմսովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի 1940 թ. օգոստոսի 1-ի «Բերքահավաքի և գյուղատնտեսական մթերքների մթերումների մասին» որոշման 7-րդ հատվածի 5-րդ կետի այն մասը, որտեղ ցուցումներ են տրված կոլխոզի ներսում պարգև-հավելումները բաշխելու կարգի մասին (ՍՍՌՄ Որոշումների ժողովածու, 1940 թ., № 20, էջ՝ 483)։

գ) ՍՍՌՄ Ժողկոմսովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի 1940 թ. օգոստոսի 1-ի «Բերքահավաքի և գյուղատնտեսական մթերքների մթերումների մասին» որոշման 5-րդ հատվածի 3-րդ կետի այն մասը, որը վերաբերում է օղակների համար լրացուցիչ աշխօրեր հաշվելուն և նրանց պարգև-հավելումներ տալուն (ՍՍՌՄ Որոշումների ժողովածու, 1940 թ., № 20, էջ՝ 483)։



դ) ՍՍՌՄ Ժողկոմսովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի 1940 թ. հունվարի 29-ի «1940 թվականի ցանքային տարածությունները բազմամյա խոտերի սերմերով ապահովելու և երեքնուկի, առվույտի, ժիտնյակի և տիմոֆեևկայի սերմնաբուծությունը զարգացնելու հետագա միջոցառումների մասին» № 155 որոշման «գ» հատվածի 2-րդ կետի այն մասը, որը վերաբերում է կոլխոզնիկներին պարգև-հավելումներ տալուն (ՍՍՌՄ Որոշումների ժողովածու, 1940 թ., № 3, էջ՝ 80)։

ե) Ժողկոմսովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի 1936 թվականի փետրվարի 17-ի «1936 թվականի շաքարի ճակնդեղի բերքի կոնտրակտացիայի մասին» որոշման III հատվածը (ՍՍՌՄ Որոշումների ժողովածու, 1936 թ., № 13, էջ՝ 109)։

ՍՍՌՄ Ժողկոմսովետի Նախագահ՝
Վ. ՄՈԼՈՏՈՎ

ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Քարտուղար՝
Ի. ՍՏԱԼԻՆ

# ՀԱՐԱՎՍԼԱՎԻԱ

(ՏԵՂԵԿԱՆՔ)

Հարավսլավիան Բալկանյան թերակղզու ամենախոշոր պետությունն է և բազմազգ թագավորություն։ Գտնվում է Բալկանյան թերակղզու վրա և սահմանակից է հյուսիս-արևմուտքից՝ Իտալիային, հյուսիսից՝ Գերմանիային և Հունգարիային, արևելքից՝ Բուլղարիային և Ռումինիային, հարավից՝ Հունաստանին և Ալբանիային։ Արևմուտքից Հարավսլավիային ողողում է Ադրիատիկ ծովը, որը նրան բաժանում է Ապենինյան թերակղզուց։

1918 թվի դեկտեմբերի մեկին Բելգրադում հռչակվեց սերբերի, խորվաթների և սլովենների թագավորությունը, որի մեջ մտնում էին Սերբիան և Չերնոգորիան ու նախկին Ավստրո-Հունգարական կայսրության մի շարք մարզերը։ 1919 թ. սեպտեմբերին Սեն-Ժերմենի հաշտության պայմանագրով Սեր-



բիայից, Բոսնիայից, Հերցեգովինայից, Չերնոգորիայից, Սլավոնիայից, Շտիրիայի հարավային մասից և Դալմաթիայից ստեղծվեց Սերբո-Խորվաթո-Սլովենյան պետությունը։ Համաձայն 1919 թ. նոյեմբերի 27-ին Նեյում կնքած հաշտության պայմանագրի, սլավոնական նոր պետությանն անցավ Բուլղարական Մակեդոնիայի մի մասը, Ստրումիցա քաղաքով, իսկ 1920 թ. հունիսի 4-ի Տրիանոնյան պայմանագրի համաձայն՝ Խորվաթիա, Բաչկա մարզերը և Բանաթայի այն մասը, որը մտնում էր Ավստրո-Հունգարական կայսրության կազմում։

1929 թվին սերբերի, խորվաթների և սլովենների թագավորությունը վերանվանվեց Հարավսլավիայի թագավորություն։

Հարավսլավիան լեռնոտ երկիր է։ Դինարյան լեռները գրավում են Սլովենիայի, Խորվաթիայի և Բոսնիայի հարավային մասը, ողջ Հերցեգովինան և Չերնոգորիան ու Դալմաթիայի մի մասը։ Այդ լեռների բարձրությունը ծովի մակերևույթի որոշ կետերում 2000 մետրից ավելի է։ Դուրմիտոր լեռան բարձրությունը հասնում է 2528 մետրի։ Լեռները դժվարացնում են հաղորդակցությունը երկրի ներքին մարզերի ու Ադրիատիկ ծովի ափի միջև։

Մորավա գետից դեպի արևելք տարածվում են Արևելյան-Սերբական լեռները, որոնք հանդիսանում են Տրանսիլվանյան Ալպերի շարունակությունը։ Տեղանքի լեռնային բնույթն անշուշտ դյուրացնում է երկրի պաշտպանությունը։ Այդ բանը հաստատվում է 1914—18 թ. թ. համաշխարհային առաջին պատերազմի փորձով։ Հիմնականում մարտական գործողությունները Հարավսլավիայի տերիտորիայի վրա հնարավոր են միայն գետերի հովիտներում։ Սակայն, Հարավսլավիայի գետերի մեծամասնությունը լեռնային բնույթ է կրում. նրանք արագահոս են, ոլորապտույտ և հոսում են գլխավորապես կիրճանման ափերով։ Լեռնային հովիտները շատ նեղ են և զիգզագաձև։ Դրան պետք է ավելացնել այն, որ Հարավսլավիան շափազանց անտառոտ է։ Անտառներով են ծածկված համարյա բոլոր լեռնալանջերը։ Անտառների մեծ զանգվածներ հանդիպում են նաև գետերի հովիտներում։

Հարավսլավիան սովորաբար համարվում



է Միջերկրական ծովի կլիմայի գոտում գտնվող երկիր։

Սակայն այս եզրակացությունը ճիշտ է միայն Ադրիատիկ ծովի ափի նկատմամբ, իսկ Հարավսլավիայի կենտրոնական մասը բնորոշվում է խիստ կլիմայական պայմաններով։ Այստեղ ձմեռը բավականին երկարատև է, օդի ցածր ջերմաստիճաններով և ձյան մեծ նստվածքով։

Հարավսլավիայի տերիտորիան կազմում է 247542 քառ. կիլոմետր, ազգաբնակչությունը 15.700.000 մարդ։ Հարավսլավիայում քանակապես ամենատարածված ժողովուրդը սերբերն են մոտ 5,2 միլիոն (36,2 %)։ Երկրորդ տեղը գրավում են խորվաթները— 4,4 միլիոն (31,2 %)։ Սլովենները Հարավսլավիայում կազմում են մոտ 1,1 միլիոն (7,9 %)։ Բացի դրանից Հարավսլավիայում ապրում են չերնոգորցիներ (0,8%), բոսնիացիներ (1,8%), ռումինացիներ (2,1%), գերմանացիներ (3,7%), հունգարացիներ (3,3 տոկոս), ալբանացիներ (4,3 %), մակեդոնացիներ (6,9 %)։ Սերբերը և խորվաթները

տարբերվում են իրարից մի շարք պատմական պատճառներով։ Բազմաթիվ դարերի ընթացքում այս երկու սլավոնական ժողովուրդներն ապրել են բացարձակապես տարբեր քաղաքական պայմաններում։ Սերբերը երկար ժամանակ գտնվում էին թուրքերի իշխանության տակ, այն ժամանակ, երբ խորվաթներն ապրում էին նախկին Ավստրո-Հունգարական միապետության տերիտորիայում։

1929 թվից հետո Հարավսլավիայում ոչնչացվեց մարզերի նախկին բաժանումը— Խորվաթիայի, Սլովենիայի, Վոյվոդինայի, Սերբիայի, Դալմաթիայի, Չերնոգորիայի, Բոսնիայի, Հերցեգովինայի և Սերբիական Մակեդոնիայի։ Սահմանվեց 9 նոր վարչական մարզ (բանովինա)— Դունայի, Դրավի, Դրինի, Սավի, Վրբասի, Մերձ-Ծովյան, Զետի, Վարդարի, Մորավի և Բելգրադի։ Խորվաթիան, որը նախկինում կազմում էր միասնական ազգային օկրուգ, բաժանվեց չորս բանովինաների— Դրավի, Սավի, Վրբասի, Դունայի։

Երկար բանակցություններից հետո, 1939 թ. օգոստոսին, այն ժամանակվա Հարավսլավական վարչապետ Ցվետկովիչը խորվաթական գյուղացիական պարտիայի ղեկա-



վար Մաչեկի հետ մի համաձայնություն ստորագրեց, որով ընդունվում էր Խորվաթիայի մասնակի ինքնավարությունը։ Մաչեկը գրավեց Հարավսլավական կառավարության փոխվարչապետի պաշտոնը։ Խորվաթներով բնակված մարզերը միացվեցին, այսպես կոչված՝ Խորվաթական ինքնավար բանովինայում, Զագրեբ գլխավոր քաղաքով։ Այդ բանովինայի մակերեսը հավասար է 66.393 ք. կիլոմետրի։ Այնտեղ ապրող խորվաթների թիվը 3.216 հազար է, սերբերինը՝ 886 հազար։

Հարավսլավիայի մայրաքաղաք Բելգրադում հաշվվում է 265.000 բնակիչ, Զագրեբում՝ 185.000, Սուբոտիցայում՝ 104.000։ Բնակիչների քանակի տեսակետից դրանց հաջորդում է Սկոպլեն, Սարաևոն, Լյուբլյանան։

Հարավսլավիայի գլխավոր քաղաքական պարտիաները հանդիսանում են սերբիական ռադիկալ պարտիան, խորվաթական գյուղացիական պարտիան՝ Մաչեկի գլխավորությամբ և սլովենական քրիստոնեական պարտիան։

Ողջ երկիրը բաժանված է վեց ռազմական օկրուգների, օկրուգն ունի իր բանակը: Յուրաքանչյուր բանակն ունի մինչև 3—4 դիվիզիա և ընդհանուր մոբիլիզացիայի դեպքում երկիրը, արտասահմանյան մամուլի հաշիվներով, հաշված նաև ռեզերվը, կարող է դուրս հանել մինչև 1.800.000 զինվոր: Ավիացիան բաղկացած է մոտավորապես 800 առաջին գծի ինքնաթիռից և 120 ծովային ավիացիայի ինքնաթիռից: Ռազմական նավատորմում հաշվվում է մեկ թեթև հածանավ, 4 էսմինեց, 8 ականակիր և 4 սուզանավ:

Ավստրիան Գերմանիային միացվելը 1938 թվին և Ալբանիայի Իտալիայի կողմից գրավվելը 1939 թ., ամբողջովին փոխեցին Հարավսլավիայի ստրատեգիական դրությունը: Նա հիմա Գերմանիայի և Իտալիայի հետ ունի ընդհանուր ցամաքային սահման, ընդորում, այդ երկրներից դեպի Հարավսլավիա են գնում բազմաթիվ հաղորդակցության ճանապարհներ: Իտալո-Հարավսլավական



սահմանը հատվում է մեկ երկճյուղ և երկու մեկճյուղ երկաթուղիներով և երկու լավ ավտոճանապարհներով: Գերմանիայից դեպի Հարավսլավիա գնում են մեկ երկճյուղ և երկու մեկճյուղ երկաթուղիներ: Հարավսլավիան ճանապարհների խիտ ցանցով կապված է Հունգարիայի, Ռումինայի և Բուլղարիայի հետ: Հարավսլավիայից գնում են դեպի Հունգարիա՝ 12, դեպի Ռումինիա՝ 5 և դեպի Բուլղարիա՝ 2 երկաթուղիներ: Բացի այդ բուլղարո-հարավսլավական սահմանը հատում է 5 և ռումինո-հարավսլավական սահմանը՝ 3 խճուղի:

Ադրիատիկ ծովի Հարավսլավական ափը չափազանց կտրտված է: Այստեղ կան բազմաթիվ ծոցեր, խորշեր և խարսխակայաններ, որոնք ռազմածովային նավատորմի համար կարող են ծառայել որպես հիանալի նավահանգիստներ:

Հարավսլավիայի թագավորական գահն զբաղեցնում է Կարագեորգիևիչների դինաստիան: Մինչև վերջին դեպքերը, Պյոտր երկրորդ թագավորի անչափահասության հետեվանքով, երկիրը ղեկավարում էր Պավել պրինց-ռեգենտը: 1941 թվի մարտի 27-ին թագավոր Պյոտր երկրորդը հայտարարեց, որ թագավորական իշխանությունն անցնում

է իր ձեռքը և Հարավսլավիայում կազմված է նոր կառավարություն— Դուշան Սիմովիչի գլխավորությամբ: Վարչապետի առաջին տեղակալ մնաց Մաչեկը: Կառավարության մեջ մտան բոլոր քաղաքական պարտիաների ներկայացուցիչները:

Հարավսլավիան գյուղատնտեսական երկիր է: Գյուղացիները կազմում են ազգաբնակչության 76%-ը: Ցանքային տարածությունները գրավում են ողջ երկրի տերիտորիայի 52%-ը, անտառները՝ մինչև 30%-ը: Սերբիայում գերակշռում է մանր գյուղացիական տնտեսությունը, Խորվաթիայում՝ խոշոր կալվածատիրական հողատիրությունը: Հարավսլավիան արտահանում է հաց: Անասնապահության մթերքների արտահանությունը կազմում է Հարավսլավայի ողջ արտահանության 29%-ը:

Երկրում կան քարածխի, պղնձի, կապարի, ցինկի, քրոմի և բոքսիտների խոշոր հանքատեղեր, որոնք ստրատեգիական արժեքավոր հումք են հանդիսանում: Հարավսլավիայի կենտրոնում և հարավ-արևելքում՝ Բոսնիայում և Սերբիայում գտնվում են քարածխի, պղնձի, քրոմի համարյա բոլոր հանքատեղերը, երկաթահանքի պաշարների մոտ 43 %-ը,



ցինկի հանքի 67%-ը, պիրիտների 50%-ը և այլն:

Կապարի և ցինկի հանքերի մոտ 20%-ը գտնվում է Հարավսլավիայի հյուսիս-արևմուտքում — Սլովենիայում: Խորվաթիայում գտնվում են երկաթահանքի և քարածխի գլխավոր կենտրոնները: Երկրի հյուսիս-արևելքը (Վոյվոդինա), ամենևին չունի հանքեր, սակայն աչքի է ընկնում հողի արգավանդությամբ:

Հարավսլավիայում յուրաքանչյուր տարի արդյունահանվում է 5 միլիոն տոնն քարածուխ, 1,4 միլիոն տոնն լիգնիտ, 3—4 միլիոն խորանարդ մետր բնական գազ, 560.000 տոնն երկաթահանք, 6000 տոնն մարգանեցի հանք, 55.000 տոնն քրոմի հանք, 850-ից մինչև 900.000 տոնն պղնձի հանք, 850.000 տոնն կապարի, ցինկի հանք, 215-ից մինչև 220.000 տոնն բոքսիտ 115.000 տոնն պիրիտներ, 1,3 հազար կիլոգրամ ոսկի, 4,4 հազ. կիլոգրամ արծաթ:

Ծանր ինդուստրիան երկրում թույլ է զարգացած: Հարավսլավիայում տարեկան ձուլվում է ընդամենը 75—76 հազ. տոնն չուգուն միայն: Մեքենաշինությունը թույլ է զարգացած: Այդ հանդիսանում է Հարավսլավիայի ռազմական հզորության մեծ թերությունը:

*Սպառազինության տեսակետից նա զգալի չափով կախված է ներմուծումից։ Հարավսլավիայում կան ավիացիոն մի քանի մանր գործարաններ, հետևակային և հրետանային սպառազինության գործարան և ուրիշ ռազմական գործարաններ։*

*Հարավսլավիայի էկոնոմիկայում հսկայական դեր է խաղում Դունայը, որն իր վտակների հետ միասին հանդիսանում է երկիրը Իտալիային, Գերմանիային, Հունգարիային, Ռումինիային և Բուլղարիային կապող հիմնական ջրային երակը։ Դունայի գլխավոր վտակները կազմում են դեպի Իտալիան, Գերմանիան և Հունգարիան ու Բելգրադի վրայով դեպի Սալոնիկ և Ստամբուլ տանող կարևոր ճանապարհները։ Հարավսլավիան, որպես դունայական խոշոր երկիր, մտնում է նոր (ամիտարային) Դունայական հանձնաժողովի մեջ։*

---



# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԱՌԱՐԱՆ

(Թերթերում հանդիպող առանձին խոսքերի և հասկացողությունների բացատրություններ)

ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԱՎՏՈՄԱՏԻԶԱՑԻԱ.— *Արտադրության մեջ այնպիսի ինքնաշարժ մեքենաներ մտցնելը, որոնք աշխատում են առանց մարդու օժանդակության և բանվորի միայն հսկողության կարիք են զգում։*

*Ժամանակակից ձեռնարկությունների բարդ տեխնոլոգիական պրոցեսները ղեկավարելու համար միայն արտադրական գիտելիքները, վարպետությունը, ճարպկությունը և այլն բավական չեն։ Անհրաժեշտ է նաև այդ գործիքների ղեկավարման ավտոմատիզացիան, որը հենվում է բազմաթիվ օպերացիաների բարձրորակ, ճիշտ և ժամանակին կատարման գիտականորեն մշակված սիստեմի վրա։*

*Արտադրության ավտոմատիզացիան ապահովում է արտադրության բարձր որա-*

կը, մշակման ճշտությունը, խոտանի համարյա իսպառ վերացումը, հումքի խնայողաբար օգտագործումը, աշխատանքի պայմանների դյուրացումը, բանվորների որակի բարձրացումը և աշխատանքի արտադրողականության վիթխարի աճը։

Ավտոմատիզացիայի առավելությունները երևում են թեկուզ հենց այն օրինակից, որ ընկ. Վոզնեսենսկին բերեց իր զեկուցման մեջ 18-րդ պարտկոնֆերանսում։ Ինչպես մատնանշեց ընկ. Վոզնեսենսկին, ձուլման ցեխի տեխնոլոգիական պրոցեսի ավտոմատիզացիան հնարավոր է դարձնում 2,5 անգամ կրճատել միջին կարգի բանվորների քանակը, իջեցնել արտադրանքի ինքնարժեքը 2 անգամ, կրկնակի չափով կրճատել խոտանը և ստանալ ամենաբարձր որակի չուգունի ձուլվածք։

ՄԵՐԿ ԷԼԵԿՏՐՈԴԻ ՄԻՋՈՑՈՎ ԱՎՏՈՄԱՏԻԿ ԶՈԴՈՒՄ ԿԱՏԱՐԵԼԸ ՖԼՅՈՒՍԻ ՇԵՐՏԻ ՏԱԿ.— *էլեկտրոզոդման մի նոր, բարձր-արտադրողական, տեխնոլոգիական պրոցես, որը մշակվել է 1940 թվին ՍՍՌՄ-ում, Ուկրաինական ՍՍՌ Գիտությունների Ակադեմիայի էլեկտրոզոդման ինստիտուտի կողմից։*

Պրոցեսի էությունը կայանում է նրանում,



որ որպես էլեկտրոն ծառայող մերկ մետաղալարը առաջ է խաղացվում կարի (шов) ողջ երկարությամբ մեկ շարժվող ավտոմատիկ զոդիչ գլխիկի միջոցով։ Զոդման տեղը սահմանափակված է երկու թիթեղիկներով, որոնց արանքը լցվում է ֆլյուսով (քիմիական բաղադրություն)։ Զոդումը տեղի է ունենում ուժեղ էլեկտրական ուժի ազդեցության տակ՝ մինչև 3000 ամպեր։ էլեկտրոհաղորդման միացման դեպքում, ֆլյուսի տակի զոդիչ աղեղը բռնկվում է՝ հալեցնելով զոդվող մետաղի մասնիկները, էլեկտրոդը և ֆլյուսի շրջակա շերտը. այդպիսով արդեն կատարվում է զոդումը։ Զոդումը կատարվում է երկու մեխանիզմների— ավտոմատիկ գլխիկի և գլխիկը կամ մետաղն առաջ խաղացնող սարքավորման օգնությամբ։

Այս մեթոդը տալիս է հսկայական արտադրողականություն. որոշ դեպքերում 40 անգամ ավելի շատ, քան սովորական զոդումը։ Այս մեթոդի առավելություններից է նաև այն, որ աղեղը վառվում է ֆլյուսի հաստ շերտի տակ, որի պատճառով բոցը տեսանելի չէ և զոդող բանվորի աչքերը պաշտպանության կարիք

չեն զգում։ Վնասակար գազերը, նույն պատճառով չնչին քանակությամբ են առաջանում, որն ի հարկե, բարելավում է արտադրանքի պայմանները։

Զոդիչ աշխատանքների մեծ տեսակաբար կշիռը մեքենաշինության մի շարք ճյուղերում (վագոնաշինություն, նավաշինություն և այլն) մեծ մասսայականացում է խոստանում այդ առաջավոր պրոցեսի համար։

ԶՈԴԻՉ ՖԼՅՈՒՍՆԵՐ.— Զոդման պրոցեսում առաջացող օքսիդները հալեցնող քիմիական բաղադրություն է, որը կիրառվում է պղնձի, ալյումինի, չուգունի, հատուկ պողպատների զոդման ժամանակ։

Չուգունի և պղնձի զոդման ժամանակ կիրառվում են այնպիսի ֆլյուսներ, որոնք բաղկացած են բորաքսից և բորոթթվից։ Փոշու կամ մածուկի ձևով պատրաստված ֆլյուսը նախապես անց է կացվում զոդման ենթակա կարի (шов) վրա կամ անմիջապես մետաղի վրա։ Ֆլյուսի հատուկ բաղադրությունը ավտոմատիկ զոդման համար մշակվել է Ուկրաինական ՍՍՌ-ի Գիտությունների Ակադեմիայի կողմից։



ԱՐՏԱԴՐԱՆՔԻ ԱՎՏՈՄԱՏ ՀՍԿՈՂՈՒԹՅՈՒՆ.— Մեքենաների և սարքավորումների մի սիստեմ է, որոնք սիստեմատիկաբար հսկում են, թե որքանո՞վ արտադրանքի չափերը և ամրությունը համապատասխանում են տեխնիկական պայմաններին։ Շատ դեպքերում ավտոմատ հսկողության սարքավորումը ձգտում են դարձնել մեքենայի կամ դազգյահի մասնիկը։ Նման սարքավորումը թույլատրում է ավտոմատ կերպով կառուցվածքը փոխել, անհրաժեշտ քանակով արտադրելուց հետո կամ խոտանի երևան գալու դեպքում դադարեցնել արտադրական պրոցեսը. այդպիսիք են ներքնահղկիչ դազգյահների ավտոմատ չափիչների սարքավորումները։ Պատրաստվում են նաև հատուկ հսկիչ մեքենաներ և բարձր արտադրողականության սարքավորումներ։

Դազգյահ— ավտոմատների, կիսաավտոմատների զարգացումը, որպես ակտուալ խնդիրներից մեկն առաջ է քաշում հսկողության ավտոմատիզացիան։ Շատ գործարաններում հսկիչների թիվը հասնում է արտադրող բանվորների կազմի 25—30 տոկոսին. օրինակ— Առանցքակալների առաջին պետական գործարանում կան

3000-ից ավելի հսկիչներ: Ավտոմատիկ հսկողության հսկիչ մեքենաների (որոնք աշխատում են ավելի ճիշտ և մարդուց շատ անգամ արագ) ներդրումն օժանդակում է ինքնարժեքի իջեցմանը, արտադրանքի որակի բարելավմանը:

**ԲԵՍՍԵՄԵՐԱՑՈՒՄ.**— Հատուկ սարքավորումների (конвертеры) մեջ հեղուկ չուգունն օդով փչելու միջոցով պողպատ ստանալու պրոցես: Այդ պրոցեսը հայտնագործված է 1895 թվին անգլիական ինժեներ Բեսսեմերի կողմից:

Կաղապարող-պողպատաձուլական ցեխերը սովորաբար գործածում են այսպես կոչված՝ «փոքր բեսսեմերացում»: Փոքր բեսսեմերացման պրոցեսի պարզությունը և սարքավորումների էժանությունն ապահովել է նրա լայն տարածումը:

Կոնվերտորների տարողունակությունը սովորաբար հավասար է 1—4 տոննի: Փուքսը հաղորդվում է կոմպրեսորից 0,2-ից մինչև 0,3 մթնոլորտ ճնշման տակ: Հալված չուգունը վերցվում է սովորական քուրայից: Այդպիսով, յուրաքանչյուր գործարան, որտեղ կա չուգունաձուլոց ցեխ, կարող է



առանց մեծ ծախսերի, բեսսեմերացման մեթոդով ստանալ պողպատե ձուլվածք:

Մեքենաների արտադրության մեջ պողպատե ձուլվածքների օգտագործումը՝ չուգունե ձուլվածքների փոխարեն, բարձրացնում է մեքենաների դիմացկունությունը և իջեցնում է մետաղի պահանջը 30—50 %-ով:

Կառավարության կողմից մոտերս ընդունված հատուկ որոշմամբ նախատեսվում է այդ մեթոդի լայն կիրառումը մեր մեքենաշինության մեջ:

**ԿՈԳ-ՍԱԳԻԶ.**— Բույս, որն իր արմատներում պարունակում է կաուչուկ (հումք, որից պատրաստվում է ռետին):

Անցյալում մեր երկիրը չի ունեցել իր կաուչուկը և ներմուծել է այն արտասահմանից:

Պարտիայի և կառավարության ցուցմունքներով սովետական գիտնականներն սկսեցին կաուչուկ պարունակող բույսեր գտնելու հետախուզումներ կատարել: Այդպիսի բույսերից մեկը՝ կոգ-սագիզը, որն արտաքինից նման է խատուտիկին, գտնվեց Տյան-Շանի լեռնալանջերում, կոլխոզնիկ Սպիվաչենկոյի կողմից:

Կոգ-սագիզի տարածումը ՍՍՌՄ-ի գա-

նալան մասերում ցույց տվեց, որ այն հիանալիորեն աճում է նաև Ուկրաինայի, Բելոռուսիայի դաշտերում, կենտրոնական սևահող և ոչ-սևահող գոտում։ Այժմ կոք-սագիզ է ցանված տասնյակ հազարավոր հեկտար հողերի վրա։ Նրա մշակումից կոլխոզնիկները մեծ եկամուտներ են ստանում։

Կոք-սագիզի մշակումը պետական մեծ նշանակություն ունի, որովհետև այն տալիս է երկրի ժողովրդական տնտեսությանը և նրա պաշտպանությանն անհրաժեշտ կաուչուկը և այդպիսով ամրապնդում է մեր ժողովրդական տնտեսության ինքնուրույնությունն ու անկախությունը կապիտալիստական աշխարհի նկատմամբ։

Կաուչուկի սպառման քանակի տեսակետից ՍՍՌՄ-ն աշխարհում գրավում է երկրորդ տեղը։

Երկրի կաուչուկի պահանջը տարեց-տարի աճում է։ 1941 թվի գյուղատնտեսական աշխատանքների պլանը նախատեսնում է կոք-սագիզի ցանքերի զգալի լայնացումը և նրա բերքատվության բարձրացումը։ Այդ բանին օժանդակում են պարտիայի և կա-



ռավարության մի շարք որոշումները և միջոցառումները։

1941 թվի փետրվարի 28-ին հրապարակված ՍՍՌՄ Ժողկոմսովետի և ՀամԿ(բ)Պ ԿԿ-ի որոշումը՝ «Կոք-սագիզի ցանքի տարածության լայնացումների և բերքատվության բարձրացման ձեռնարկումների մասին» ուժեղացնում է կոլխոզների և կոլխոզնիկների շահագրգռվածությունն այդ կուլտուրայի մշակման գործում։

Կոք-սագիզի արմատները պետության հանձնելու պլանների գերակատարման համար, ինչպես և կոք-սագիզի հանձնումն այն կոլխոզների կողմից, որոնց համար պետական պլան չի սահմանված և այն կոլխոզնիկների կողմից, որոնք հանձնում են կոք-սագիզ իրենց տնամերձ հողամասերից, այդպիսի կոլխոզները և կոլխոզնիկները կարող են պետական գներով ստանալ համապատասխան քանակությամբ ռետինե արտադրանք— կրկնակոշիկներ, բոտիներ, անվառետիններ և այլն։

ԿՈՄՊԼԵԿՏԱՅԻՆ ԱՐՏԱԴՐԱՆՔ.— Արտադրանք (մեքենաներ, կահավորանք և այլն), որն արտադրված է մասերի, պիտույքների լրիվ հավաքվածությամբ։

Արտադրանքի ոչ-կոմպլեկտայնությունը ժողովրդական տնտեսությանը հսկայական վնաս է հասցնում։ Այսպես օրինակ որովհետև 1940 թվին Չելյաբինսկի գործարանը ոչ կոմպլեկտային տրակտորներ արտադրեց (պակաս մասերով և դետալներով), գարնանացանի եռուն օրերին շատ տրակտորներ կանգ առան։ Գորկու ավտոգործարանի գլխավոր կոնվեյերն անցյալ տարի հավաքական ցեխի ոչ-կոմպլեկտային մասեր հանձնելու հետևանքով, ամեն օր 30 րոպեից մինչև 3 ժամ կանգ էր առնում։ Այդպիսի պարապուրդների հետևանքով գործարանը հերթափոխի ընթացքում կորցնում էր տասը—քսան մեքենա։

Ոչ-կոմպլեկտային արտադրանքի բաց թողնումը նշանակում է աշխատանքի կազմակերպվածության խախտում, բանվորական ուժի և սարքավորման ոչ-արտադրողական բեռնվածություն, հումքի, վառելիքի և մատերիալների փչացում։ Ահա թե ինչո՞ւ այդ բանը համարվում է հակապետական հանցագործություն և սովետական օրենքով խստորեն պատժվում է։

**ՄԻԱԽԱՌՆՎԱԾ (легированные) ՊՈՂՊԱՏ ԵՎ ՉՈՒԳՈՒՆ.**— Պողպատի և չուգունի



ձուլվածք, որի որակը բարձրացված է միախառնիչ տարրերի (легирующих элементов) ավելացումով (մետաղի մեխանիկական հատկությունները, դիմացկունությունը, բարձր ջերմաստիճանների ժամանակ՝ ամրությունը բարձրացնող և մետաղին մագնիսային անտիկոռոզային հատկություններ փոխանցող հատուկ նյութեր). այդպիսիք են օրինակ՝ չօքսիդացող պողպատները։

Որպես միախառնիչ տարրեր (легирующие элементы) կիրառվում են քրոմը, նիկելը, մոլիբդենը, վոլֆրամը, վանադիումը և ուրիշները։ Այդ տարրերի մի շարք միացությունները՝ ֆերրում ածխածնային հալվածքներում տալիս են միախառնված պողպատի և չուգունի զանազան տեսակներ։ Նրանցից մի քանիսը, ինչպես օրինակ— քրոմոնիկելային պողպատը, մոլիբդենային, քրոմային չուգունները և այլն, իրենց մեծ կարծրության պատճառով լայնորեն կիրառվում են կոնստրուկցիաների ծանրությունները թեթևացնելու գործում։

Միախառնիչ էլեմենտները պատկանում են հազվագյուտ և դեֆիցիտային մետաղների թվին։ Այստեղից էլ բղխում է նրանց ամեն կերպ խնայելու, ճիշտ ծախսման և,

առանց մեքենայի հատկությունները վատթարացնելու, նրանց՝ հասարակ մետաղներով փոխարինելու մեթոդները գտնելու անհրաժեշտությունը։

ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ՀՐԱՊԱՐԱԿ.— Այն տերիտորիան, որտեղ կատարվում են արտադրության բոլոր հիմնական և օժանդակ պրոցեսները։ Այստեղ են գտնվում բանվորները, մեքենաները, կահավորանքը, գործիքները և այլն։ Սովետական իշխանությունը գործարաններ և զավոդներ կառուցելիս ապահովում է աշխատանքի լավագույն պայմանների ստեղծումը, աշխատանքի պաշտպանության և տեխնիկայի անվտանգության բոլոր կանոնների լիակատար պահպանումը։ Դա անհրաժեշտ է դարձնում ստեղծել ավելի մեծ արտադրական հրապարակներ, քան գոյություն ունեն կապիտալիստական երկրների նույնատիպ ձեռնարկություններում։ Սակայն շատ դեպքերում, նախագծող և շինարարական կազմակերպությունները շռայլություն են անում— առանձնացնում են չափից դուրս մեծ արտադրական հրապարակներ։ Դա նշանակում է պետական միջոցների անխնա ծախսում և մեծ քանակությամբ ձեռ-



նարկություններ ստեղծելու հնարավորության սահմանափակում։

ԶՈԴԻՉ ԿԱՐ (шов).— Դա զոդվող մետաղի այն մասն է, որն առաջանում է միացման տեղում՝ զոդման հետևանքով։ Կարերի մի քանի հիմնական տեսակներ են տարբերվում— կցորդային, անկյունային, գլանային։

ՍՏԱՆԴԱՐՏ.— Արտադրանքի տիպական կամ օրինակելի տեսակը, որը բավարարում է չափի, կշռի, որակի և այլնի որոշակի պայմաններին։ Կան մեքենաների, շինանյութերի, թղթի, գործվածքների ստանդարտներ։ Սահմանված են նաև գյուղատնտեսական մթերքների ստանդարտներ,— յուղի, հացի, մսի, բրդի և այլն։

ՍՏԱՆԴԱՐՏԻԶԱՑԻԱ.— Արդյունաբերության նույնատիպ արտադրանքին անցնելը յուրաքանչյուր ճյուղում՝ արտադրությունը ռացիոնալ դարձնելու նպատակով։ Ստանդարտիզացիան արագացնում և էժանացնում է արտադրանքի բաց թողնումը, կրճատում է արտադրության կորուստները, ստեղծում է բանվորական ուժի խնայողություն, պարզեցնում է արտադրությունը։

Մասերի և դետալների ստանդարտիզա-

ցիան ապահովում է նրանց փոխարինելիությունը, կրճատում է պահեստի մասերի կարիքը, դյուրացնում է մեքենաների խնամքը, նրանց վերանորոգումը և օգտագործումը, պատրաստի արտադրանքի պահպանումը և տեղափոխումը։ Ստանդարտների փոփոխությունը կախված է տեխնիկայի և հումքի որակի փոփոխությունից։

Պատասխանատու խմբագիր՝

Դ. Բ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

ՎՖ 2013 Պատվեր՝ № 333, Տիրաժ՝ 10500

Ստորագրված է տպագրության 23/IV 41

Տպագրական 2¼ մամուլ, մեկ մամուլում 40·000 տառանիշ.

Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետին կից Թերթերի և ամսագրերի տպարան, Երևան